

# Գայլը հոտ չի գալիս

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ապարանցի ընկերս երեխաներին հեքիաթ էր պատմում։

— Մեր գյուղը, երեխեք, դեռ հիմա էլ գտնվում է այն լեռան լանջին, ձորերի ու ժայռերի միջև, որտեղ գտնվում էր իմ մանկության տարիներին։ Փոքրիկ, շատ փոքրիկ գյուղ էր։ Մեր տունն էլ կա դեռ, մնացել է։ Հիմա էլ, ինչպես իմ մանկության տարիներին, այնտեղ արևի հետ արթնանում, արևի հետ քուն են մտնում։ Հավեր են պահում, կովեր, ոչխարներ։ Հիմա էլ այնտեղ երեխաները խաղեր են խաղում, աղմկոտ, հին ու նոր խաղեր։ Եվ էլի նույն արևն է իջնում լեռների հետևը, նույն մութը պարուրում դաշտերը։ Կարծես ոչինչ չի փոխվել, միայն ես եմ մեծացել։ Հիմա ես այն տարիքին եմ, ինչ տարիքի էր իմ պապն այն ժամանակ, երբ ես դեռ գյուղումն էի ապրում։ Եվ ես հիմա հիշում եմ պապիս, տատիս. հիշում եմ ընկերներիս, բայց շատերի անունները մոռացել եմ. հիշում եմ նաև մեր դպրոցը, մինչև Մանուկին, որին գայլերը կերան օրը-ցերեկով։ Մի խոսքով, ձմեռ էր, բուք էր։ Վառարաններում խեղդվում էր կրակը, սևանում, դառնում էր ծուխ ու լցվում դասարանը։ Այն ժամանակ սովորում էի Ղազնաֆար գյուղի հինգդասյան դպրոցում։ Ամեն օր երեք-չորս վերստ գնում ու այդքան էլ ետ էի գալիս։ Երբ դուրս էի գալիս տնից, պապս միշտ զգուշացնում էր.

— Ղազնաֆարի ձորում գելեր կան, ձորը չիջնես։

Մենք, երեք-չորս ընկերներով, իրար ձայն էինք տալիս ու ճամփա ընկնում։ Անցնում էինք Ղազնաֆարի ձորի պռնկով, նայում էինք ցած՝ մութ ու ահավոր կիրճերին և ամեն անգամ որևէ մի քար նմանեցնում պպզած գայլի։ Պատահում էր, որ ամպերը լցվում էին ձորը, մանր քուլաներով փարվում ժայռերին, սահում մթնշաղի մեջ և մեզ թվում էր, թե գայլի ստվեր ենք տեսնում կամ հոշոտված ոչխար։ Սարսափից կծկվում, պապանձվում էինք։

— Ձորը չմտնեք, մառախուղ է, — զգուշաց-

digitised by A.R.A.R.@

ՓԵՏՐՎԱՐ
№ 2 1965 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*նում էր մեր ծեր ուսուցիչը, երբ ետ էինք գալիս։*

*Ձմռան օրերը կարճ են։ Գյուղում նրանք ավելի կարճ էին թվում։*

*— Այսօր, երեխեք, տարվա ամենակարճ օրն է, — ասաց Վաչագան վարժապետը դեկտեմբերի 22-ին, — այսօր շուտ դուրս եկեք, որ լույսով տուն հասնեք։*

*Մենք, չորս ընկերներով, ճամփա ընկանք, երբ լեռան կատարին դեռ բոլորովին չէին մարել վերջալույսի ցոլքերը։ Նրանք կարմիր էին, արնաթաթախ կարմիր։ Իսկ ցածից՝ ձյունապատ լեռան ստորոտից, դեպի վեր էր ձգվում մուգ մանուշակագույն մշուշը։ Ավելի ցածում, Ղազնաֆարի ձորում, արդեն մութն էր, ստվերները կուտակվում, խտանում, գիշեր էին դառնում։ «Ձորում գելեր կան, գելեր կան»,— կարծես մեկն անընդհատ շշնջում էր մեր ականջներին։ Մենք քայլում ու լուռ ու մունջ նայում էինք իրար, և մեզնից յուրաքանչյուրն աշխատում էր թաքցնել մյուսներից իր վախը, բայց բոլորս էլ վախենում էինք ու կասկածում, և բոլորս էլ անվախ էինք մեզ կարծում։*

*Առաջին վերստն անցնելուց հետո թեթև և սառը քամի բարձրացավ։ Ինչ-որ տեղից սուլոցների ձայներ էին հասնում մեզ, բայց դրանք մարդու սուլոցներ չէին, մենք այդքանը լավ էինք տարբերում։ Նրանք ավելի շուտ նման էին քամու սուլոցների։ Մենք կանգ առանք, նայեցինք իրար, բայց ոչինչ չհարցրինք իրար։ Մեր առջևում էին արդեն մթնած լեռան չորս դյուցազնական գագաթները և հատակը կորցրած, կարծես մրով լցված, ձորերը։ Միակ կենդանի բանը այդ ահավոր լռության մեջ, սառը քամու մեղմ սուլոցն էր, որ աստիճանաբար ուժեղանում և ավելի հստակ էր դառնում։*

*— Քամին է, — վերջապես շշնջաց տղաներից մեկը։*

*— Բուք է բարձրանում, — նկատեց մյուսը, և մենք շարունակեցինք մեր ճամփան։ Շատ արագ, համարյա վայրկենապես, մթնեց լեռն, ու գիշերը բարձրացավ նրա կատարը, այնտեղից էլ տարածվեց երկնքով մեկ և հենց այդ պահին էլ մեկիկ-մեկիկ դուրս եկան աստղերը։ Մռայլ քարաժայռերից մեկի մոտ թեթև իրարանցում լսվեց, մենք նորից կանգ առանք։ Մեզ թվաց, թե ինչ-որ փոքրիկ էակներ վազեցին դեպի ձորը, մենք նույնիսկ ինչ-որ շարժվող ստվերներ տեսանք։*

*— Գայլի ճուտեր են։*

*Այս դիտողությունը մնաց անպատասխան։*

*— Գնանք, ի՞նչ ենք կանգնել, — և մենք գնացինք, արդեն փոքր-ինչ տենդ մտցնելով մեր քայլվածքներում։*

*Ասում են, որ աստղերի և լուսնի երևալուն պես, մանր գազանները դուրս են գալիս իրենց բներից, դուրս են գալիս որս անելու, իսկ գայլերի, աղվեսների ձագուկները՝ լուսնի կամ աստղերի լույսի տակ խաղալու։ Այդպիսի պահերին, սովորաբար, մայր գազանը լինում է մոտակայքում, նա մի բաց տեղ նստած հսկում է, որ ոչ ոք չմոտենա իր ձագուկներին և ամենից շատ զգուշանում է մարդուց։*

*Մենք շատ շտապ հեռացանք այդ տեղից և արդեն հեռվից, շատ հեռվից, կարծես աշխարհի այն ծայրից, սկսեցինք նշմարել մեր գյուղի եզրին գտնվող տան ճրագները։*

*— Բենոյի ճրագներն են, — ասաց տղաներից մեկը, — այդ նշանակում էր անցել էինք արդեն կես ճանապարհը։*



*Մենք քայլում էինք իրար հետևից։ Առջևից գնում էր երկտարեցի Պողեն։ Նա հաստ էր, միջահասակ և, երևի, մեզնից ամենաքաջը։ Նա մերթ շտապում էր, մերթ՝ դանդաղում։ Նայում էր աստղերին, ականջը բռնում քամու դեմ։ Մենք էլ կրկնում էինք այն բոլորն, ինչ անում էր նա։ Բայց հանկարծ նա կանգ առավ և քարացավ իր տեղում։ Մենք բնազդաբար մոտեցանք նրան և ի՞նչ տեսնենք. մեր առջև, մի քանի քայլ հեռավորության վրա, խաղում, թավալ են տալիս երկու թմբլիկ գայլուկներ։ Նրանք փոքր էին, շան թուլաների նման գեղեցիկ։ Իսկ մի տասը քայլ այն կողմ, բարձր քարի վրա պպզած էր մայր*

digitised by A.R.A.R.@

գայլը։ Նա հանգիստ էր, կարծես մեզ չէր նկատել։ Պողեն ձեռքով արեց ու պառկեց, մենք էլ պառկեցինք։ Քամին ինչ-որ մեղմացավ և հեռավոր սուլոցով քաշվեց ձորերը։ Աստղերը հանգիստ, մեղր էին ծորում։ Այնքան մաքուր էին ու վճիտ, այնպես ժպտերես, որ մեր հոգին էլ լցվեց մի տեսակ խաղաղությամբ ու մեզ թվաց, թե ինչ-



որ մեղեդի, ինչ-որ մեղմ, հազիվ լսելի երգ կա աստղերի մեջ և գայլը նստած լսում է այդ երգը։ Եվ նրա հոգին էլ մեղմ է ու բարի այդ խորհրդավոր պահին։

«Տարվա ամենաերկար գիշերը», — հիշեցի ես մեր ուսուցչի խոսքերը։ Ուրեմն, այս գիշեր, մինչև լուսաբաց, այսքան մաքուր լույսով պիտի վառվեն բոլոր աստղերը։ Եվ լուսաբացը հեռու է, աստղերի գրկում, այն անհուն մեղմության մեջ, որը հիմա կախվել է երկրի վրա։

— Տե՜ս, տե՜ս, — հանկարծ շշնջաց Պողեն։

Իմ մտքերը ընդհատվեցին։ Գայլն իջավ ժայռի վրայից, շան նման պոչը շարժելով՝ մոտեցավ ձագերին, պպզեց նրանց մոտ և մերթ աջ, մերթ ձախ թաթով հրում, հարվածում, գուրգուրում էր նրանց, գլուխը դնում էր ձյան վրա, նայում բարի ու քնքուշ մոր պես։ Հետո ինքն էլ սկսեց խաղալ ու թավալվել։ Եթե գայլերը ծիծաղել կարողանային, այդ խաղաղ ու դյութիչ գիշերը կլցվեր մոր և մանկան երջանիկ հրճվանքով։ Բայց խաղը երկար չտևեց։ Փոքրիկները մրսեցին, կուչ եկան։ Մայր գայլն անմիջապես զգաց այդ։ Նա դնչով առաջ հրեց նախ մեկ, հետո մյուս ձագուկին, երևի ուզում էր ասել՝ «Գնանք, փոքրիկներս, դուք մրսում եք արդեն» և, ո՜վ սարսափ, նրանք վազեցին դեպի մեզ։ Մենք կպանք գետնին։ Մայր գայլը մոտեցավ, ես դեմքիս մոտ զգացի նրա տաք շունչը, հետո, կարծեմ, նույնիսկ լիզել էր Պողեի դեմքը։ Չգիտեմ, թե ինչ վիճակում էին նրանք այդ պահին, բայց հիշում եմ, որ սառը քրտինքը պատել էր ինձ։ Ես մեկ էլ ուշքի եկա, երբ Պողեն ասաց.

— Գնացին, գյո՛ւղը գնացին։

Մենք պպզեցինք։ Իսկապես որ նրանք դեպի գյուղ էին գնում։ Թեթև քամին ծխախոտի ծխի նման, ձյան փոշի էր բարձրացնում նրանց հետևից։ Նրանցից մեկը լավ չէր վազում, երևի հոգնել էր։ Նա հաճախ դառնում նայում էր մեր կողմը։ Դեռ լուսին չկար, բայց լույս էր, Ծիր Կաթինը արծաթե գոտու նման փայլատակում էր սառը երկնքում։ Երբ նրանք հեռացան, Պողեն ասաց.

— Երբ իմ երեսը լիզեց, ես նրանից գայլի հոտ չառա։ Երևի գայլ չէր, տղե՛րք։

— Պոչը շան նման էր պահում, — նկատեց մի ուրիշը։

Այն ժամանակ Պողեն քիչ առաջ գնաց և մաքուր ձյան վրա նայեց կենդանու թողած հետքերին։ Նա երկար ժամանակ չէր կարողանում որոշել՝ գայլի՞ հետքեր են, թե՞ շան։ Նա երևի չգիտեր նրանց միջև եղած տարբերությունը, բայց, քանի որ տարիքով մեզնից մեծ էր, մեծավարի ասաց.

— Տղե՛րք, նա իր ձագերի հետ գյուղին մոտեցավ, եթե գայլ է, հիմա շները գիլհալ կտան, կոռնան։ Եկեք լսենք։

— Գայլը այդքան չէր մոտենա մեզ, — նկատեց կարճահասակ Պետոն, — հետո նրա վրայից թրջված շան հոտ էր գալիս։ Նա քիթը կոխել էր քիթս, հոտոտում էր։

— Ինձ էլ դնչով թոթեց, — շշնջաց մեր չորրորդ ընկերը։ — Ես վախից բան չհասկացա։

Գայլն իր ձագերի հետ իջավ բլուրի հետևը։ Բլուրի հետևում մեր գյուղն էր։

— Լսենք, տղե՛րք, շները կհաչե՞ն, թե՞ չէ, — հրամայեց Պողեն։

Մենք ամբողջովին լսողություն դարձանք։ Քամին սառեց։ Նա հիմա ձյունը բարձրացնում խփում էր մեր երեսներին։ Լուռ էր մեր շուրջը և հանգիստ։ Քամին պտույտներ էր գործում։ Ձայն չկար։



8229-65
digitised by A.R.A.R.@

*— Երևի գյուղը չմտան, — նկատեց Պետոն, — շները չեն հաչում:*

*— Քամին գյուղից է փչում, տղե՛րք, — ասաց Պողոն, — գայլերի հոտը գյուղը չի գնում: Դե, գնանք, էլ ի՞նչ ենք կանգնել:*

*Եվ մենք գայլերի հետքերով դեպի գյուղը շարժվեցինք: Աստղերն ու քամին ուղեկցում էին մեզ: Նոր էինք մոտեցել գյուղի բլրին, որ հանկարծ լռությունը պատռելով՝ մեզ հասավ մի զիլ ձայն.*

*— Է՜, հե՜յ...*

*— Այդ մեզ են կանչում, — անմիջապես ասաց Պողոն, և մենք սկսեցինք վազել:*

*Հենց նոր էինք բարձրացել բլուրը, երբ բոլորս քարացած կանգ առանք: Փոքրիկ Պետոն նույնիսկ ճչաց: Դեպի մեզ էր վազում երախը բաց գայլը: Նա վազում էր իր քիչ առաջ թողած հետքերով: Ձագուկները չկային: Նրա հետևից վազում էին երկու մարդ: Պողոն պպզեց, մենք էլ բնազդաբար հետևեցինք նրա օրինակին, ընկանք ձյան մեջ: Գայլը մեծ արագությամբ վրա հասավ և ուղղակի Պողոի դեմքին կպցնելով դունչը հաչեց: Շան նման հաչեց: Ետ դարձավ, վազեց դեպի իր հետևից եկողները: Նա ուրախ-ուրախ վնգվնգում էր ու հաչում:*

*Ձյունապատ լեռան թեք ընկած լանջից լուսինը պռունգը հանեց: Գյուղը լցվեց լուսավոր ստվերներով, իսկ հեռվից, շատ հեռվից, ոռնոցներ լսվեցին: Այդ արդեն ոռնում էին իսկական գայլերը: Նրանք լուսնյակի հետ որսի էին դուրս եկել:*




ԿԱՐԼՈՍ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՑԱՐԱԼՅԱՆԻ

Արփիկը մենակ էր: Տանը ոչ ոք չկար: Մայրիկն ու տատիկը գնացել էին Քնարիկ մորաքրոջը տեսության, իսկ հայրիկն աշխատանքից դեռ չէր վերադարձել: Արփիկի մեծ եղբայրը՝ Գեղամիկը, օգտվելով մայրիկի ու տատիկի բացակայությունից, առանց դասերը պատրաստելու դուրս էր եկել բակ և աղմկելով խառնվել «կռիվ-կռիվ» խաղացող տղաների խմբին:

Արփիկը բացել էր իր նկարչական տետրը և ուշադրությամբ առանձնացնում էր միջի նկարները: Դուք չկարծեք, թե մենակությունը ձանձրացրել էր նրան և նա ձանձրույթը փարատելու համար հենց այնպես մի ինչ-որ գործ էր ստեղծել իր համար: Դեռ մի քանի շաբաթ առաջ Արփիկը որոշել էր ճաշասենյակի դիմացի պատին ցուցադրել իր ամենալավ նկարները: Բացի Գեղամիկից, տանը բոլորն էլ գիտեին այդ մասին: Արփիկը շատ լավ գիտեր եղբոր կռվարար բնավորությունը և հենց դրա համար էլ նրան դիտավորյալ ոչինչ չէր ասել: Մեկ էլ տեսար, մեջ կընկներ, թե. «ճաշասենյակի դիմացի պատը իմ նկարների համար է»: Գոնե նրկարներն էլ մի բանի նման լինեին... տանկեր, ռմբակոծիչ ինքնաթիռներ, կենդանի ու մահացած զինվորներ... Նայելիս մարդ ուղղակի սարսափից փշաքաղվում է: Ինչպես ամեն հարցում, այնպես էլ այս, Արփիկն անպատճառ կվիճեր Գեղամիկին, բայց իր նկարների մեջ գարնանային ծաղիկներ կային, վառվռուն թիթեռներ, ջինջ երկինքներ ու պայծառ-պայծառ արևներ... Արփիկն ինչպե՞ս կարող էր այդ բոլորը մեկ ուրիշ տեղ ցուցադրել, երբ նրա նկարած ծաղիկների համար արևի լույս էր պետք... Իսկ իրենց բնակարանում արևի շողերը միայն ճաշասենյակի դիմացի պատին էին ընկնում: Ինչ ուզում է լինի, այդ հարցում Արփիկը եղբորը չի զիջի:

Հանկարծ ուժգնորեն բացվեց սենյակի դուռը և



2216 - Ա.Լ.

digitised by A.R.A.R.@

խաղալիք ատրճանակը ձեռքին, հևասպառ ներս ընկավ Գեղամիկը: Ճիշտ է, եղբոր անսպասելի ներխուժումը կարգին վախեցրեց Արփիկին, բայց նա այնպես ձևացրեց, որ իբր իր համար միևնույն է, թե ով է ներս մտել: Գեղամիկն ատրճանակի փողն ուղղեց Արփիկի կրծքին ու կրակեց: Չնայած կրակոցը դիպուկ էր, բայց Արփիկը նույն անտարբերությամբ իր տեղում նստած մնաց: Գեղամիկը վարժ շարժումով ատրճանակը խրեց գոտկատեղը և, շրթերն ամուր իրար հպելուց հետո, ինքնաթիռի հոնդյունի նման աղմուկ բարձրացնելով, թևերն աջ ու ձախ պարզած՝ սկսեց արագորեն պտտվել Արփիկի շուրջը:

Արփիկն առաջվա նման անտարբեր էր: Տեսնելով, որ քույրն իր վրա ամենևին ուշադրություն չի դարձնում, Գեղամիկը դադարեց ինքնանպատակ պտույտներ գործելուց և ասաց.



— «Կոխվ-կոխվ» խաղալիս մեր բակի տղաներից ոչ մեկը չի կարող ինձ հետ մրցել:

Ոչ մի պատասխան:

— Եթե ես ցանկանամ, կարող եմ, աչքերս փակ, միանգամից աշխարհի ամենահզոր տանկերն ու ռմբակոծիչ ինքնաթիռները նկարել:

Դարձյալ ոչ մի պատասխան:

— Ծիտիկն իր փոքրիկ տոտիկներով ավելի լավ է նկարում, քան դու...

Արփիկը լուռ էր:

— Այդ խզբզանքներդ ինչի՞ համար ես ընտրում...

Արփիկը շատ լավ գիտեր եղբոր բնավորությունը, եթե այս անգամ էլ նրան անպատասխան թողներ, ուրեմն իր համար անչափ սիրելի նկարներից մի քանիսը կոչնչանային...

— Քո ի՞նչ գործն է:

— Պա՜հ, շատ պե՜տքս է, հենց այնպես, ուզում եմ իմանալ:

— Ցուցադրելու եմ:

— Որտե՞ղ:

— Ճաշասենյակի դիմացի պատին:

— Ի՞նչ, ես արդեն մեկ տարի առաջ եմ այդ տեղն ընտրել:

— Ինչի՞դ է պետք... Քո նկարների համար որտեղ էլ լինի, միևնույն է, իսկ իմ նկարներին արևի լույս է պետք...

— Արևի լո՞ւյս: Հազար ու մի տգեղ արևներ ես նկարել. մի՞թե նրանց լույսը բավական չէ:

— Արևները երբեք տգեղ չեն լինում,— լացակումած վրա բերեց Արփիկը:

— Իզուր եմ քեզ պես լացկանների հետ գլուխ դնում:— Եվ Գեղամիկը գոտկատեղից դուրս քաշելով ատրճանակը, հաղթականորեն «ուռա՜» բացականչելով նետվեց դուրս:

Գեղամիկի հեռանալուց հետո, Արփիկը սրբեց թաց աչքերը ու նայեց սեղանի վրա դրված ժամացույցին: Հայրիկի տուն վերադառնալու ժամանակն էր, հիմա, ուր որ էր, Արփիկը պարզորոշ կլսեր «թը՜խկ», «թը՜խկ», «թը՜խկ»՝ հայրիկի ծանոթ ոտնաձայնը: Ավելի ճիշտ, ոչ թե ոտնաձայնը, այլ հայրիկի հենակների խուլ աղմուկը:

Վաղուց, շատ վաղուց, այն ժամանակ, երբ դեռ Արփիկը չի եղել, աշխարհում պատերազմ է եղել... Բոլոր հայրիկների հետ միասին այդ պատերազմին մասնակցել է նաև Արփիկի հայրիկը... Պատերազմի ժամանակ Արփիկի հայրիկը երկու ոտք է ունեցել: Այժմ նա մի ոտք ունի և շատ ու շատ շքանշաններ... Մի ժամանակ մայրիկը այդ շքանշանները փաթաթել էր գեղեցիկ մետաքսաշորի մեջ և թաքցրել ինչ-որ տեղ: Իսկ այժմ, չգիտես ինչու, հին գրքերի հետ մեկտեղ հենց այնպես բաց վիճակում դրված է գրապահարանի ներքևի դարակում: Ամեն անգամ, երբ Քնարիկ մորաքույրը փոքրիկ Պարթևիկի հետ միասին հյուր էր գալիս

digitised by A.R.A.R.@

նրանց, Արփիկը անմիջապես բաց էր անում գրապահարանի դարակը և ցույց տալով շքանշանները, հպարտորեն ասում էր.

— Հայրիկինն է, հերոսության համար է ստացել...

— Գիտեմ,— թեթևակի նայելով իրենց նախկին փայլը կորցրած շքանշաններին, անտարբերությամբ պատասխանում էր Պարթևիկը և մի տեսակ ծուլորեն ավելացնում.— Հանգստյան օրը հայրիկիս հետ միասին գնալու ենք ձկնորսության...

«Թը՛խկ», «թը՛խկ», «թը՛խկ»,—աղմկեցին մուտքի աստիճանները:

Ինչպես միշտ, հայրիկին ընդառաջ գնալու համար Արփիկը ուրախացած նետվեց դուրս: Աստիճանահարթակի վրա Արփիկն ամուր փարվեց հայրիկին և, կարևոր լուր հաղորդողի լրջությամբ, ասաց.

— Տանը ոչ ոք չկա: Տատիկն ու մայրիկը գնացել են Քնարիկ մորաքրոջը տեսության, իսկ Գեղամիկը բակում «կռիվ-կռիվ» է խաղում:

— «Կռիվ-կռի՜վ»,— հենակից կոշտացած ձեռքի ափով մի քանի անգամ ճակատը շփելուց հետո, նկատելիորեն վրդովված խոսեց հայրիկը,— «կռիվ-կռիվ»... իսկ փոքրիկ տանտիրուհին ինչո՞վ է զբաղված:

Նա հաճախ այդպես էր անվանում Արփիկին:

— Ուզում եմ ճաշասենյակի դիմացի պատին ցուցադրել նկարներս, բայց Գեղամիկն ասում է...

Արփիկը դեռ խոսքը չէր վերջացրել, երբ հանկարծ ատրճանակը ձեռքին սենյակ ներխուժեց Գեղամիկը: Հայրիկին տեսնելուն պես, նա իսկույն թաքցրեց ատրճանակը և այնպիսի անմեղ տեսք ընդունեց, որ նայողին կթվար, թե գնացել էր դասընկերոջից գրչածայր խնդրելու:

— Հը՞, եթե այդքան քաջ ես, դե փորձիր հայրիկի ներկայությամբ էլ կրկնել ասածդ,— դիմեց նրան Արփիկը:

— Ի՞նչը:

— Այն, որ ճաշասենյակի դիմացի պատը քո նկարների համար է...

— Իհա՛րկե...— պատասխանեց Գեղամիկը:

— Հայրիկը թույլ չի տա: Քո նկարները վատ են. նրանց մեջ ծաղիկներ չկան... ճիշտ չէ՞, հայրիկ:

Հայրիկը քնքշությամբ շոյեց Արփիկի թուխ վարսերը և ասաց.

— Ոչի՜նչ. աղջի՛կս, միասին ցուցադրեք ձեր նկարները:

— Ինչո՞ւ,— չքողարկված դժգոհությամբ քրթմընջաց Արփիկը,—ինչի՞ համար են այդ տանկերն ու հրանոթները:

— Որ ոչ ոք չհամարձակվի տրորել քո ծաղիկները..., Որ քո ծաղիկների համար միշտ արև լինի, աղջիկս:



# ԵՐԿՈՒՍԸ՝ ՄՇՈՒՇՎԱԾ ՈՒ ՍԱՌԸ ՇԵՆՔԵՐԻ ԱՐԱՆՔՈՒՄ

ՆԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

*— Հանգի՛ստ նստիր, ինչ ես ցնցվում,— ասաց հայրը,— կարծես տակդ ասեղ լինի: Եվ կռծքով մի՛ հենվիր, արմունկներդ էլ սեղանի վրա փռել ես:*

*Նա զգում էր, որ երբեմն տղան չի նկատում իր ներկայությունը և կարծես մենակ լինի: Նա ուզում էր, որ տղան միշտ զգա իր գոյությունը: Ներս եկան մի քանի բանվորներ: Նրանք հայացքով ազատ աթոռներ փնտրեցին և ցրվեցին սեղանների արանքներում:*

*— Օհո՜, Պարսամ,— ասաց եզանը մոտենալով,— ողջո՜ւյն, այս ի՜նչ է, ընտանեկան ճա՜շ, հա՛-հա՛:*

*— Նստիր մեզ հետ,— ասաց հայրը,— ծեր տեղամասում ի՞նչ կա:*

*— Թքա՛ծ,— ասաց եզանը և ձեռքը թափ տըվեց:— Ինչպե՞ս է փոքր Պարսամը,— դիմեց նա տղային և ձեռքը դրեց գլխին:— Հոյակապ տղամարդ կդառնա:*

*Տղան գլուխը քաշեց նրա շոյող ափից:*

*— Այսօր,— ասաց հայրը,— նա նորից փախել էր Հրազդան: Առավոտյան արթնանում եմ, տեսնեմ չկա,— տղան գլուխը հակել էր ափսեին, զգում էր հոր խիստ հայացքը,— և կիսահագնված վազեցի ավտոբուսի կայան, չկար: Ուրեմն՝ ինչքա՜ն վաղ էր արթնացել:*

*— Ա՛յ, ա՛յ, ա՛յ,— ասաց եզանը գլուխը տարուբերելով:— Սատանա տղա է... Լսո՞ւմ ես, թե մեկ էլ այդպես եղել է, աչքերդ կհանեմ, հավատո՞ւմ ես:*

*Եզանը ամրակազմ էր և անհոգ:*

*— Իսկ դու, Պարսամ,— հանկարծ եզանը դար-*



digitised by A.R.A.R.@

ծավ հորը.— ի՞նչ կասես, երեկոյան մի տեղ չհավաքվե՞նք: Լավ տեղ գիտեմ, խորովածով և, հասկանո՞ւմ ես.— Նա ափով շփեց կոկորդը և պարզեց ափը:

Հայրը առանց գլուխը դարձնելու կարծես զգաց այդ ափը, ձեռքը բարձրացրեց, դրեց այդ ափի մեջ:

— Իսկ դու, տղա,— ասաց եզանը հեռանալով նրանցից,— քեզ կարգին պահիր, մյուս անգամ չլսեմ:

— Եզա՛ն,— նրա հետևից ձայն տվեց Պարսամը,— կանգնես, միասին դուրս կգանք:

Եզանը ետ նայեց և բարձրացրեց ձեռքը: Տղան պատառաքաղը աղմուկով դրեց վար: Հայրը սեղմում էր ծնոտը: Տղան նկատեց, թե ինչպես նրա երեսի մկանները կծկվում էին:

— Կե՛ր,— ասաց հայրը. նա չէր նայում տղային, պատառաքաղը ձեռքին անշարժ էր:— Կե՛ր, դու ինքդ ասում էիր, որ տապակած կողիկ սիրում ես:

— Չեմ ուտում,— շեշտված կամակորությամբ ասաց տղան և ափսեն դեն հրեց: Ուրիշ ժամանակ հայրը նկատում էր նրա ամենաչնչին զանցանքը, իսկ հիմա մեղմ էր և ասես չնկատեց:

Այնուհետև հայրը պիտի ասեր տղային. «Հրազդանում դու կարող ես կապվել վատ տղաների, և նրանք քեզ ճանապարհից կհանեն: Ես քեզ չեմ ծեծում, բայց դու պիտի հասկանաս, որ դա քեզ բանի չի հանգեցնի, այդպես ինքնագլուխ լինելը»: Նա հիմա պիտի ասեր այդ խոսքը և չէր կարողանում զսպել դեմքի մկանները և եթե խոսեր, թվում էր ձայնը չպիտի հնչեր հանգիստ ու ազդեցիկ:

Նա օգնեց տղային հագնել վերարկուն, և նրանք ճաշարանից դուրս գնացին:

Մինչև հասան տուն, օրը մթնեց, սկսեց տեղալ խոշոր, փափուկ, հանդարտ իջնող ձյուն: Բանավանում թարթեցին, վառվեցին լույսերը: Տաք երեկո էր: Հայրը արդուկեց դեռ երեկ լվացած շորերը, մաքրեց տղայի կոշիկները, փայլեցրեց, թել դրեց: Նրանք նստեցին իրար դիմաց, ռադիոընդունիչի մոտ:

— Ասում են այդ Ռոբերտ Հեյսը հարյուր մետրը քանի վայրկյանում վազե՞ց,— հարցրեց հայրը:

— Հարյուր յարդը,— ճշտեց տղան,— ինն ու մեկ տասնորդականում:

— Դա շատ արագ է:

— Իսկ ի՞նչ ես կարծում, պապ,— հարցրեց տղան,— Բրումելը Տոկիոյում այդ Ջոն Ուինտերին կհաղթի՞:

— Անկասկած,— ասաց հայրը և ավելացրեց.— կթեյես, գազայրոցը մարելիս վերևի ծորակն էլ կփակես, սեղանը ես կհավաքեմ:

Տղան տխրեց, ուրեմն՝ հայրը պիտի գնար: Հայրը բացեց լուսամուտի վերևի օդանցքը, և տղան զգաց դրսի թարմ օդը:

— Ես չեմ թեյի,— ասաց տղան:

— Այդ դեպքում ի՞նչ կանես,— մտահոգ, ավելի իրեն, քան նրան հարցրեց հայրը:

— Ոչինչ էլ չեմ անի:

Եզանը հրեց դուռը. կոշիկներից հատակին թափվեց թարմ, սպիտակ ձյուն:

— Պարսամ,— ասաց նա հորը,— ավտոբուսից ուշանում ենք, ստիպված կլինենք կես ժամ անտեղի սպասել:

— Թեյ չես խմի, ի՞նչ կանես,— հարցրեց հայրը:—Տղան չէր պատասխանում:—Ես վախենում եմ նրան թողնել մենակ. նա, գիտես, այնպիսի պտուղ չի, որ նրա համար հանգիստ լինես:

— Դու խելոք կմնաս, Սեթ,— ասաց եզանը տղային:

Տղան կանգնած էր հոր մոտ: Հայրը շոյեց նրա մազերը: Գլխին մատների ջղաձիգ հպումից տղան զգում էր, որ նա հազիվ զսպում է իրեն, որպեսզի չգոռա.

— Գուցե կգնաս կինո՞, հա՞, ակումբում ցուցադրում են «Սաշկան», ես փող կտամ: Նա մի երկու անգամ դիտել է այդ «Սաշկան», բայց կարող է տասներորդ անգամ դիտել:— Տղան բացասաբար շարժեց գլուխը:— Կամ կգնաս Նանար մորաքրոջ մոտ հեռուստացույց նայելո՞ւ:— Տղան անդրդվելի էր:— Օ՛հ, չգիտեմ ինչպես վարվեմ նրա հետ,— այդ րոպեին հայրը զայրացած էր տղայի և այն ամենի վրա, ինչը առնչվում էր այդ տղայի հետ: «Դրա մայրն էլ այդպես էր, համառ»,— ուզում էր ասել նա, սակայն զսպեց:—Նա, չգիտես, թե ինչ համառն է: Գուցե կգնաս դահուկով սահելո՞ւ կամ, ուզո՞ւմ ես, նստիր այստեղ, ինչքան ուզում ես, քրքրիր գըրքերս:

— Եկող տարի,— ասաց եզանը,— գիշերօթիկը կբացվի, տուր գիշերօթիկ և հոգիդ կազատվի:

Եզանի համար անսպասելի քնքշությամբ հայրը հանկարծ շոյեց տղայի գլուխը:

— Հորդ լսի՛ր, հա՞, հորը կլսեն. կթեյես, ահա և թեյը եռաց. լիմոնը գիտե՞ս որտեղ է, սեղանը կարող ես չհավաքել, ես կանեմ. քնելիս, տես, սավանը լայնքով չգցես վրադ, դուռը կփակես:

— Ես սեղանը կհավաքեմ,— ասաց տղան:

— Դու լավ տղա ես,— ասաց հայրը:

— Նա,— ասաց եզանը,— պինդեր է... Չէ՞, դե, տեսնո՞ւմ ես, պինդեր է:

Գիշերը հոր սաստիկ խռխռոցից տղան արթնացավ: Հայրը պառկած էր մահճակալին, բաճկոնը արձակ, շորերը որովայնի վրայից վեր քաշված, ուսը գզգզոտ. գլխարկը ընկած էր հատակին: Դուռը մնացել էր բաց, և սենյակը ցրտել էր, և լույսը վառ էր մնացել: Նա վերցրեց հոր գլխարկը, ծած-



digitised by A.R.A.R.@



կեց դուռը, հոր ոտքերից քաշեց հանեց երկարաճիտ կոշիկները, քաշեց հանեց շորերը։

— Պա՛, պա՛,— ձայնեց նա, ցանկանալով արթնացնել նրան, սակայն հայրը շրջվեց մեջքի և դարձյալ խռմփաց։ Արդեն կարելի էր տակից քաշել հանել սավանը։ Մութ սենյակում, անկողնի մեջ պառկած՝ տղան երկար ժամանակ չէր կարողանում լացը զսպել, հիմա նա ուղղակի ամաչում էր լալ, թեև ուզում էր։ Նա վաղ արթնացավ, անշշուկ հագնվեց, զարթուցիչը լարեց դրեց հոր գլխավերևում ու դուրս եկավ։

Դեռ մութ էր։ Ավտոբուսների կանգառում ոչ ոք չկար։ Արհեստագործական ուսումնարանի պատուհաններում լույսերը տակավին մարած էին։ Ջյունը հաստ շերտով ծածկել էր բոլոր շինությունների տանիքները, և ցուրտ էր։

Տղան նստեց ավտոբուսի ամենավերջին նստարանին, սպասում էին վարորդին, որն ինչ-որ տեղ էր գնացել։ Նա եկավ, բարձրացավ մեքենա և, նախքան նստելը, հայացքով փնտրեց գտավ տղային։

— Դեհ,— ասաց նա,— հապա իջիր, հայրդ ապսպրել է, որ քեզ այլևս չվերցնենք, իջիր, մարդիկ սպասում են, ուշ է։

Տղան երկար նայեց ավտոբուսի հետևից։ Նա քայլեց ավտոբուսի բաց արած հետքով, մինչև դուրս եկավ բանավանից։ Լուսանում էր, անցավ մի բեռնատար, տղան քաշվեց ճամփեզրը, նա մնաց ճամփեզրին և երկրորդ բեռնատարն անցնելիս ձեռքը բարձրացրեց, ավտոմեքենան կանգ առավ նրանից հեռու, նա վազքով հասավ։

— Ո՞ւր ես ուզում,— հարցրեց վարորդը։

Նրա դեմքը կարճ էր, համարյա մորթե գլխարկի չափ և համարյա նույնքան լայն, խոսելիս նրա բերանում ցնցվում էր մարած գլանակը և թվում էր նրա կարճ, լայն, կլորիկ ծնոտը հատկապես այդ գլանակը պահելու համար էր, և նրա կանաչավուն աչքերը նկատելի կերպով իրարից հեռու էին, տղան այդ մարդու վերաբերյալ համակրանք զգաց։

— Մինչև Հրազդան,— ասաց նա։

— Նստիր, միասին կգնանք։

Տղան Հրազդանում առհասարակ թափառում էր խանութներում, մտնում էր ակումբը, լճի սառույցի վրա տղաներից խնդրում էր չմուշկներ կամ լեռան վրայից նրանց հետ իջնում էր սահնակով։ Հրազդանում նա ճարել էր շատ բարեկամներ։

Հորը նա սպասեց դասերից հետո, այնտեղ, ուր կառույց տանող բետոնամած ճանապարհը հատվում էր բանավան բերող խճուղուն։ Թվում էր հեռվում, հարթության վրա ձյունը պիտի ծածկած լիներ կառույցները, սակայն կառույցները ցցված էին վեր և նույնիսկ բետոնամած ճանապարհի ուղղաձիգ ժապավենը նկատելի էր բավական հեռվից։ Թվում էր ջերմաէլեկտրակենտրոնի կիսատ ծխնելույզի եզրերը մշուշված պիտի լինեն երկնքում, այնքան ցածր ու ծանրացած էր թվում երկինքը, և ծխնելույզին նայելիս նա զգում էր հարթավայրի վերևում այդ գորշավուն, համարյա մթամած, ահավոր բարձրությունը։ Ճանապարհ-



digitised by A.R.A.R.@

ներին սահող ավտոմեքենաներից երկուսը վեր-ջապես դարձան բանավան բերող ճանապարհով, ապա՝ երկու ուրիշ ավտոմեքենա. տղան վազեց ընդառաջ. հայրն իջավ երկրորդ ավտոմեքենայից. տղան նրա ձեռքը սեղմեց ափի մեջ, և նրանք մյուսների խմբում շարժվեցին բանավանի խճու-ղով: Նա քայլում էր հոր կողքից, պայուսակը թևատակին, և նրանց բոլորի ներբանների տակ սառչող ծյունը շփշփում էր: Մտան ճաշարան. հայրը բերեց երկու բաժին բորշչ և երկու բաժին տապակած շնիցել. նրանք երկուսն էլ համարյա նույնքան մրսած էին:

Նրանց մոտ նստեց Շմավոնը. նա շոյեց տղայի գլուխը և թվում էր, թե նա այդ անում է տղայի մազերը իր գազաթին կողքի սղալված մի քանի մազերի հետ համեմատելու միտումով:

— Շմավոն,— ասաց հայրը, ամառը քո երե-խաներին չթողնես նրա հետ խաղան:



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Նա լավ տղա է,— ասաց Շմավոնը:

— Նա ամեն օր փախչում է Հրազդան:

— Պարսամ, ինչպե՞ս են գործերը,— հարցրեց մոտով անցնող մի բանվոր:

— Այսօր միջին խրամուղին վերջացրի,— ասաց հայրը:— Վերջում գետինը քարոտ էր, մի քանի շերեփ վնասվեց. վաղը կկանգնեմ նորոգման, բա-րեհաջող կլինի. միայն թե այս տղայի հետ ոչինչ չի ստացվում:

— Նա խելոք տղա է,— ասաց Շմավոնը,— էլ այդպիսի բան չի անի: Եվ ինձ արհամարհում է:

Տղան իր հետևում լսեց Եզանի ձայնը.

— Օ՜, ողջո՛ւյն, Պարսա՛մ,— ասաց նա հորը,— այսօր ես ձեզ հետ կճաշեմ:

Եզանը աթոռը մոտ քաշեց:

— Եվ Պարսամ,— ասաց նա հորը,— խոստա-ցիր, որ երեկոյան միասին կլինենք: Նա սքանչե-լի ընկեր է, ավելի հուզիչ մարդ գոյություն չու-նի. տխուր ու առանց աղմուկի. սիրում եմ: Խո՛սք տուր, որ կգաս:

— Լսո՞ւմ ես, Եզա՛ն,— ասաց հայրը,— այսօր նա նորից փախել էր Հրազդան:— Եվ դարձավ տղային.— Երեկ դու քեռի Եզանին խոստացար...

— Ես չխոստացա,— ասաց տղան:

— Նորի՞ց փախել է,— ասաց Եզանը,— վա՜յ, վա՜յ, վա՜յ: Դու կգա՞ս ինձ հետ, Պարսա՛մ, կու-զես, կգամ, միասին դուրս կգանք:

— Նա էլ այդպիսի բան չի անի,— ասաց Շմա-վոնը:

Տղան վար էր դրել պատառաքաղը:

— Նա էլ չի փախչի,— ասաց Շմավոնը,— ճի՞շտ եմ ասում: Ամառը երբ իմ երեխաները գան:

— Կգնամ, կգնամ,— հանկարծ համարյա բղավեց տղան,— վաղն էլ կգնամ:— Նա առաջ չէր կարողանում զսպել լացը, բայց հիմա ուզում էր լաց լինել և ասում էր համարյա լացակումած:

— Սա ի՜նչ է...— զարմացավ Շմա-վոնը:

Հայրը բարձրացրեց հայացքը.

— Վաղը չե՛ս գնա Հրազդան:

— Կգնամ, վա՛ղն էլ,— ասաց տղան:

Հայրը զգում էր, որ դա ստաց-վում է այնպես, ինչպես ինքը կա-սեր Եզանին կամ Շմավոնին, և իրենք կարող էին երկար վիճել, և նա կարող էր պնդել, որ վաղն էլ կգնար, և ինքն էլ կարող էր նրան միայն համոզել, որ նա չպիտի գնա. երեկ տղան իր հագից քաշել հանել էր երկարաճիտ կոշիկները, հանել էր բաճկոնը, սավանով ծած-կել էր:

— Թո՛ղ, Պարսամ,— Եզանը նրա համարյա ականջի մոտ անհույս թափ տվեց ձեռքը,— միև-նույն է...

— Խոստացիր,— պնդեց հայրը,— և դա ստաց-վեց ինչպես ընկերը կասեր ընկերոջը. «Ես նրա հետ չեմ կարողանում խոսել ինչպես մեծը փոքրի հետ, ա՜յ, թե ինչ»,— ուզում էր ասել նա:

«Եվ այդ տղան,— մտածում էր Եզանը,— այս մարդուն պատուհաս կլինի դեռ երկար, և սա շու-տով չի կարող ազատվել նրանից»:

— Թո՛ղ, միևնույն է,— ասաց նա:— Դու ասա, Պարսա՛մ, հանդիպո՞ւմ ենք, այսօր՝ արդեն ուրիշ տեղում, տանտերը իմ հին ծանոթն է:— Նա Պարսամի առջև սահեցրեց ափը և ցնցում էր նրա ուսը:



digitised by A.R.A.R.@

Պարսամը զգում էր, որ պիտի համաձայնվի և դրա համար իր ձեռքը պետք է դնել այդ ափի մեջ. նա վերջերս ոչ մի կերպ չէր կարողանում տղայի հետ խոսել որպես մեծը փոքրի հետ...

— Եզա՛ն,— ասաց նա:

Եվ տղան զգաց, որ իրենց միջև խոսակցությունը արդեն վերջացավ, որ հայրն այլևս չի պնդի, չի պահանջի և չի ստիպի. նա համարյա հուսահատվեց և ջղայնացավ այն մտքից, որ հայրը իրեն իրավացի չէր համարում պահանջելու, սաստելու. նա ափսոսանքով զգում էր, որ ինքը հաղթեց:

— Վաղն էլ կփախչեմ,— համարյա լացակումած ասաց նա:

Հայրը չէր նայում նույնիսկ նրա աչքերին, նայում էր իր առջև Եզանի բաց ափին, և միանգամայն անսպասելի ասաց.

— Ո՛չ, Եզան, արևս վկա, չեմ կարող,— Նա ուզում էր ասել. «Հասկանո՞ւմ ես, ուղղակի իրավունք չունեմ»,— սակայն կրկնեց.— Չե՛մ կարող:

Եվ տղան զգաց, որ կարիք էլ չկար, որ նա դեն հրեր Եզանի բաց ափը: Նա ձեռքը տարավ տղայի դեմքին, ափի մեջ մատների արանքում նա զգում էր տղայի թխագույն մազերի ջերմ հպումը և մտածում էր. «Նա մայրն է, նա ամբողջովին մայրն է, համառ»: Հայր ու որդի համարյա նաշել-վերջացրել էին, և տղան ամեն օր էլ տապակած կողիկը չէր ուտում: Եվ նրանք ելան ոտքի:

Հոր մոտ, մանավանդ հետևի կողմից, տղան թվում էր փոքր, և հետևից գնացող հայրը իրենով ծածկում էր նրա ամբողջ մարմինը. նրանք անցան սեղանների արանքով, ելան ճաշարանից և, տրորելով փուխր ձյունը, հեռացան փողոցով՝ մշուշված ու սառը շենքերի արանքում:

## ԱՅԴ ԻՆՉՊԵ՞Ս ԵՂԱՎ...

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Արամիկն այնքան տկար էր, վտիտ,
Նիհար էր, ինչպես մի սրած մատիտ:
Մայրիկն ասում էր.
Ի՞նչ ճամբար, ի՞նչ բան.
Առողջարան է հարկավոր սրան:—
Բայց տղան անվերջ մորը համոզում,
Անպայման ճամբար գնալ էր ուզում:
Գնաց...

Եվ ահա նա ետ է դարձել.
Գունատ այտերը լցվել, սևացել,
Շառագունել են խնձորների պես,
Նոան հատիկ են շրթունքներն ասես:
Ու փոքրացել են շորերը վրան..
Մայրիկը հազիվ ճանաչեց նրան
Մի՞թե մեր վտիտ Արամիկն է սա...
Այդ ինչպե՞ս եղավ, բալիկ ջան, ասա...





## ՖՈՒՏԲՈԼԻՍՏ ՔԱՄԻՆ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Մաքուր ու լայն մեր բակում
Տղաներն են աղմկում:
Վազվզում են առաջ, ետ,
Գնդակ խաղում քամու հետ:
Մեկ էլ քամին բարկացավ,
Դիպավ պատին ետ դարձավ,
Պտտեց գնդակն ինչպես հոլ,
Մի հարվածով խփեց գոլ:
— Լա՜վ խփեցինք.— Սոսն ասաց,—
Ու ծափ տվեց հիացած:
— Չե՛ք խաղացել դեռ ֆուտբոլ.
Ո՞նց կարող եք խփել գոլ:
Ես հաղթեցի ձեր թիմին,—
Հպարտ ասաց գիժ քամին:

## ՃԻԿՆ ՈՒ ՃՈՒԿԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Կռվում էին, ճվճվում
Երկու փոքրիկ ճնճղուկ:
Ճիկը գցել խեղճ Ճուկին
Գզգզում էր խղճուկին:
Մեկ էլ կռվի թեժ ժամին,
Ոնց որ սարի գիժ քամին,
Վրա տվեց չար բազեն
Ծիտիկներին մեր անզեն:
Ճիկն ու Ճուկը միացան,
Իրենց դավը մոռացան,
Ու մեկն օգնեց մյուսին,
Փախան, պրծան միասին:



digitised by A.R.A.R.@

# «ԿԱՏԱՐՅԱ՛Լ Է... ԹՈՂ ԾԱՌԱՅԵ...»

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

1387 թվականի ամառային մի պայծառ օր, Սյունյաց Սիսական* գավառի Բռնակոթ գյուղը իջնող ոլորապտույտ արահետի վրա հայտնվեցին երեք տարօրինակ օտարական։

Առաջինը նրանց նկատեց վայրի մասրենու տակ նախաճաշող պատանի հովիվն ու, զարմանքից քարացած, բրդուճը կոկորդում, սկսեց նայել դարավանդից իջնողներին։

Նրանցից մեկը՝ տարիքավորը, նստած էր մի քնձռոտ ավանակի վրա. նրան ուղեկցող պատանիներից առաջինը բռնել էր ավանակի ականջներից, իսկ երկրորդը ամբողջ ուժով ձգում էր պոչից, որպեսզի բեռան տակ ճկված, հոգնած անասունը չսահի թեք ու սլկուն վայրէջքում։

Չնայած որ սրատես պատանին արդեն հետաքրքրությունից վառվող աչքերով դիտում էր անծանոթների տարօրինակ հանդերձանքը, մեծ եղավ նրա զարմանքը, երբ դարավանդից իջնելուց հետո, ուղեկցող պատանիների օգնությամբ տարիքավորը կանգնեց իր զույգ... ոչ, ոչ, մի ոտքի վրա։ Պատանու զարմանքը վերածվեց ապշանքի, երբ նա տեսավ, որ ձախ ձեռքի ձեռնափայտի օգնությամբ ու աջ ոտքին փոխարինող փայտյա ձողի վրա ծռմռվելով քայլող այդ մարդը զուրկ է և աջ թևից։ Այդպիսի մեկին նա երևակայել իսկ չէր կարող, որովհետև այդ կողմերում հազվագյուտ բան էր կոնատը, ուր մնաց մեկը, որ այդ անծանոթի նման ոտք էլ չունենար։ Եվ բանը միայն դրանում չէր. բավական չէր, որ օտարականը համարյա կես մարդ էր, նա սարսափախառն զարմանք էր առաջացնում նաև իր տարօրինակ դեմքով։ Նրա խուզված գլուխը ծածկված էր սրածայր, եռանկյունաձև մի գլխարկով. երկար ու կախ ընկած բեղերի արանքից դուրս էր ցցվել սրածայր, կարճ մորուքը, իսկ որ ամենազարմանալին էր, նա իր աչքերին, չգիտես ինչու, կրում էր պատանի հովվի համար միանգամայն անըմբռնելի, կլոր ու խոշոր ապակիներ, որոնք արևի ճառագայթների տակ պսպղալով հիշեցնում էին գայլի՝ խավար գիշերին փայլատակող աչքերը։

Արտասովոր և սարսափազդու այդ մարդը, ինչպես և նրան ուղեկցող, մինչև ուսերն իջնող մազերով, գլխաբաց պատանիները հագել էին քաթանե երկար շապիկներ ու մեջքները ամրացրել պղնձյա շողշողուն ճարմանդներ ունեցող գոտիներով։ Հակառակ տրեխավոր պատանիների՝ հաշմանդամի միակ ոտքի կոշիկն էլ պակաս զարմանք չէր առաջացնում։ Այն բարձր կրունկ ուներ և երկար ճիտքը կիսով չափ ծալված էր ներքև, մի բան, որ նույնպես անսովոր էր այդ կողմերում։

Ու այսպես՝ մինչ ծանր բեռից ազատված ավանակը դեսուդեն նետվելով ախորժակով խժռում էր արահետի եզերքի փարթամ կանաչը, ու մինչ սարսափազդու հաշմանդամի քայլվածքին հարմարվելով, երկվորյակների նմանվող պատանիները դանդաղորեն առաջանում էին փոշոտ արահետով, հովիվը, նախաճաշը մոռացած, վեր թռավ մասրենու տակից և կարճ ճանապարհով վազ տվեց դեպի գյուղ՝ լուր տալու տարօրինակ օտարականների մասին...



* * *

Պատանի հովիվը գյուղ հասավ թե չէ՛ այնպիսի մի ձայն գցեց, որ մարդիկ կալն ու կուտը մոռացած, որը եզանով, որը շերեփով, որը մոտիկ հանդից, որը հիվանդության անկողնուց, կին ու մանուկ, ծեր ու ջահել հավաքվեցին գյուղամեջում ու անհամբեր սպասում էին դանդաղորեն առաջացող հաշմանդամին։ Օտարականները գյուղ հասան, ու անհամբեր շինականները շրջապատեցին նրանց։ Հետո, ինչպես որ լինում է այդպիսի դեպքերում, ինչքան որ պետք էր, նայեցին արտասովոր հաշմանդամին, նրա միակ ոտքի տարօրինակ կոշկին, խաչի փոխարեն վզից կախված աքցանանման, երկճյուղ երկաթի կտորին ու, ավելի արտասովոր, նրա աչքերը ծածկող մետաղյա շրջանակների մեջ առած խոշոր ու կլոր ապակիներին։ Ու մինչ հոգնած, տարօրինակ ու սարսափազդու հաշմանդամը ավանակին հենված, հաստ ապակիների տակից լուռ ու մտախոհ նայում էր համետի ծայրին ամրացված տուփին, պատանիները պատմեցին, որ իրենք հայեր են, իրենց վար-

* Այժմ Սիսիան



digitised by A.R.A.R.@



պետի հետ եկել են հեռու-հեռուներից, որ իրենք և՛ դարբին են, և՛ ոսկերիչ, և՛ շատ ու շատ բան, այնպիսի բաներ, որ շինականները չհասկացան։

* * *

Առաջին ձմեռը նրանք անցկացրին այդ գյուղի ապարանքի բակում գտնվող դատարկ պահեստներից մեկում։ Բայց, որովհետև Ծղուկի ձորի եզերքում ընկած գյուղերի տեր իշխանը համարյա ամեն օր մինչև լույս քեֆերով էր անցկացնում ու խանգարում միշտ ինչ-որ բանով մտազբաղ ու անքուն վարպետին, ու դարբնոցն էլ իր աղմուկով էր խանգարում ցերեկը քնով անցկացնող իշխանին, հենց որ մառախուղները քաշվեցին ու եկավ ամառը, գյուղից դուրս, մի փոքրիկ տափարակի վրա, շրջակա հարուստ անտառներից կտրված գերաններով նրանք շինեցին մի փոքրիկ կացարան ու հենց կացարանի դեմ՝ մի փոքրիկ դարբնոց։

Վարպետի գծագրով պատանիները շինեցին և դեպի դիմացի գեղատեսիլ անտառին նայող կացարանի պատի մեջ ամրացրին մի աննման լուսամուտ։ Այդպիսի լուսամուտի համար կնախանձեր և ինքը շքեղ ապարանքի տեր իշխանը։ Այն շինված էր ամբողջովին պղնձից, փոքրը մեծի մեջ տեղավորված երկու շրջաններից, որոնք իրար էին հյուսվում գույնզգույն ապակիներ ունեցող նշաձև շրջանակներով։ Հատկապես արշալույսերին և վերջալույսերին շողշողում և անկյակը հեքիաթային գույներով էր ողողում կենտրոնի սաթևանի աստղը, իսկ խավար գիշերներին, երբ ներսում մինչև լույս ճարճատում էր մարխը, կլոր լուսամուտը փայլատակում էր ծիածանի յոթ գույներն ունեցող մի կախարդական արևի պես։ Դա մի հրաշք լուսամուտ էր։ Սակայն հաշմանդամ վարպետի հռչակը տարածվեց ոչ միայն դրանով. Նրա ցուցմունքով ու գծագրերով պատանի աշակերտները շինում էին այնպիսի եղաններ ու կացիններ, այնպիսի թրեր ու վահաններ և այնպիսի նուրբ զարդատուփեր ու զարդեր, որ շուտով նրա համբավը ձորից-ձոր արձագանքելով հասավ ոչ միայն մինչև Կյորեշ* ու Տաթև, այլև այդ խուլ լեռնաստանի սահմաններից դուրս գտնվող ամրոցներն ու վանքերը։

Սակայն, չնայած հռչակին, ոչ ոք չգիտեր, թե ով էր նա, որտեղից էր եկել, ովքեր էին երկվորյակների նմանվող նրա պատանի աշակերտները։ Չգիտեին և վարպետի անունը, որովհետև նա լուռ էր ինչպես արձանը և աշակերտներն էլ նրան միայն «վարդապետ» էին կոչում, ինչպես այդ դարերում կոչում էին ամրոցներ ու վանքեր կառուցող, խաչքարեր ու քանդականախշ բուխարիներ տաշող և առհասարակ բոլոր տեսակի վարպետներին։

Հեռավոր աշխարհից փախած մի հալածական կամ մահվան դատապարտված մե՞կն էր նա, որ, ապաստան գտնելով լեռների ծոցում ծվարած Բռնակոթում, զգուշության համար թաքուն էր պահում իր անունը։ Հետաքրքիր էր, որտե՞ղ էր կորցրել նա իր աջ ձեռքն ու աջ ոտքը. չէ՞ որ

---

* Գորիս



digitised by A.R.A.R.@

դա էլ զարմանք բան էր. պատերազմո՞ւմ, բայց ե՞րբ է նետ ու աղեղով, թրով և կացնով պատերազմողը միանգամից կորցնում իր ձեռքն ու ոտքը: Դահճի ձեռքո՞վ էր հաշմանդամվել, բայց չէ՞ որ ոչ մի աշխարհում այդպիսի պատիժ չկա. կտրում են թևը, ականջները, քիթը, լեզուն, սակայն ոտքը...

— Պայթյունի՜ց, պայթյունի՜ց,— վերջապես մի օր, էլ չհամբերելով, ձյութի պես կպչող շինականներից մեկին պատասխանեց վարպետից ոչ պակաս լռակյաց աշակերտներից մեկը:

Շինականի բերանը մնաց բաց. նա ոչինչ չհասկացավ, և ով լսեց՝ չհասկացավ:

Պայթյունի՜ց... Բայց ի՞նչ բան է այդ պայթյունը...

Ու այդպես, ամեն տեղ խոսում էին այդ անհասկանալի «պայթյունի» և «աչքերին կախած ապակիների» և առավել, գիշերները վառվող մարխի տակ լուսացնող, ո՞վ գիտե, ի՜նչ կախարդական գործերով զբաղվող այդ «ոսկեձեռք» վարպետի մասին...

* * *

Ու այսպես, երբ ամբողջ Բռնակոթը և նրանից հեռու ընկած գյուղերում ու ամրոցներում մարդիկ գլուխ էին կոտրում իրենց հետաքրքրող այդ հարցերի վրա, մի զարմանահրաշ բան պատահեց...

Շինականի մեկը, մի օր կոտրած մանգաղը նորոգելու համար հազիվ էր ոտքը դարբնոցի շեմքը դրել, երբ զարմանքից աչքերը չռվեցին...

Դարբնոցի անկյունում հսկայական փուքսի կողքին, աշակերտներից մեկը բորբոքում էր հնոցի կրակը, իսկ մի տարօրինակ «չարխավոր բանի»* առջև, որ ոչ շուռ տված սայլ էր, ոչ էլ մանելու ճախարակ, չոքել էր մյուսը: Սա, ինչ որ ջրհորից ջուր քաշեն, պտտեցնում էր այդ զարմանալի ճախարակի ատամնավոր «չարխերից» մեկի կողքից ցցված բռնակը: Ու երբ չէ՜ր պտտեցնում՝ այդ փոքրիկ «չարխը» պտտեցնում էր մի քիչ ավելի մեծ մի «չարխի», դա էլ մի ուրիշի ու, չգիտես ինչպես, դանդաղորեն, ճռնչալով պտտվում էր ամենամեծ «չարխը», որի տակից աշակերտը ինչ-որ երկարուկ պղնձի կտոր էր դուրս քաշում:

«Տեր աստված, այս ի՜նչ հրաշք է»,— ուզում էր ասել շինականը, երբ տեսավ զարմանքների-զարմանք բանը...

Առաջինը, որ նրա աչքովն ընկավ, փայտե ոլորուն սյուների վրա թառած, փայտից քանդակված երկու թռչուններ էին, որ իրենց կտուցների մեջ առած, սեղմ պահում էին վեց աղեղնաձև հավասար մասերով եզերված պղնձյա մի փայլուն վահանակ, որ կենտրոնից բաժանվում էր տասներկու ճառագայթող խազերով: Վահանակի տակ գտնվում էր ուղղահայաց, ձուլածո մի սլաք, որ իր ծայրով շփվում էր վահանակի եզրին: Եվ մինչ շինականը զարմանքից բաց բերանով նայում էր, «վարդպետը», աշկերտից ստացած առանցքավոր-աստղաձև «չարխը» վահանակի տակ թաքցնելուց հետո, վզից կախված աքցանանման երկաթի կտորով սկսեց պտտեցնել, որից շինականին թվաց, թե ներսում ինչ-որ բան սկսեց ծղրիդի պես երգել. հետո երբ «վարդպետը» ետ քաշվեց ու ծղրիդը լռեց, այս անգամ թվաց, որ զարմանահրաշ թռչունները սկսեցին «չիկ-չիկ» անել...

Շինականը քարացել էր զարմանքից, երբ վահանակը անկարծ դժժալով պտտվեց ու եզերքի խազերից մեկը կանգ առավ ուղղահայաց կերպով ամրացված անշարժ սլաքի ծայրին:

—Կատարյալ է,— խուլ գոհունակ ձայնով ասաց «վարդպետը», որից շինականը պակաս չզարմացավ, առաջին անգամ լսելով այդ միշտ լուռ ու խորհրդավոր մարդու ձայնը:

Բայց շինականը չհասկացավ, թե ինչ պատահեց, որից այդպես գոհ մնաց այդ սարսափելի մարդը: Հետո, երբ ասես կենդանացած փայտե թռչունները շարունակում էին իրենց «չիկ-չիկ»-ը, նա, ինչպես կախարդված մի վայրում, վախից դողացող ծնկներով շուռ եկավ, աղերսական մի հայացք գցեց պատանիների վրա...

Իսկ նրանք ժպտում էին գոհ ու երջանիկ...

— Սա... սա... ի՞նչ բան է...— հևալով շշնջաց նա:

— Ժամացույց,— պատասխանեց նա, որը փուքսն էր փչում:

— Ժա-մա-ցու՞յց. դա ի՞նչ բան է...

Պատանին ժպտաց.

— Իսկ դու չե՞ս տեսել իշխանի ապարանքի ճակատին գտնվող ժամացույցը, այն, որ ժամանակն է ցույց տալիս՝ առավոտը, կեսօրը, երեկոն,— բառերը մեկ-մեկ շեշտելով ասաց պատանին:

— Տեսե՜լ եմ...— կմկմաց շինականը,— ո՜նց չեմ տեսել... Բայց դա քարի՜ց է... արևի է... խազեր ունի. միջտեղն էլ մի երկար ձող է տնկած... ես դրանից էլ գլուխ չեմ հանում:

— Իսկ սրանից հանո՞ւմ ես,— ժպտալով մեջ ընկավ մյուսը, որ դեռ չոքել էր «չարխի» տակ:

— Աստված ոչ անի,— խաչակնքեց շինականը,— սա հո սատանի բան է... էս ո՞նց են երգում էս ղշերը, էս ո՞նց է պտտում էս նախշած լագանը...

Պատանիները ուրախ ծիծաղեցին.

— Դա լագան չէ, թվացու՜յց է,— ասաց փուքս փչողը,— իսկ այդ չկչկոցը պտտվող անվակների ձայնն է. սլաքն էլ ժամերն է հաշվում:

Շինականը իսպառ կորցրեց իրեն.

* Չարխ—անիվ

— Ուրեմն… ասում ես ներսում սատանանե՞ր են նստած…

— Ի՞նչ սատանաներ,— զարմացավ պատանին։

— Դե, էդ Թվացույցը, Անվակը, Սլաքը, Ժամերը,— կրկնեց սարսափից գունատված շինականը՝ աղավաղելով «սատանաների» անունները։

Թվում էր, թե ուրախ պատանիների ծիծաղն այժմ ոչ ոք չէր կարող զսպել։ Նույնիսկ «վարդապետի» դեմքին ժպիտի նման մի բան երևաց։

— Այդ բոլոր «սատանաները» պղնձից են, և մենք ենք շինել,— ասաց պատանին շարունակելով ծիծաղել,— իսկ ժամերը…

Իսկ այդ պահին ահաբեկված շինականը շնչասպառ պտտվում էր խրճիթից-խրճիթ և զարմանք ու սարսափ սփռելով պատմում իր «աչքով տեսած, փայտից տաշած, երգող ղշերի» և Թվացույց, Անվակ, Սլաք ու Ժամեր կոչվող սատանաների մասին…

* * *

Եվ «սատանայական» ժամացույցի մասին եղած լուրը տարածվեց Ծղուկի ձորով, հասավ հեռու՜-



— Ոնց թե… շինել եք…— զարմացավ շինականը,— բա որ շարժվու՞մ են, ձեն են հանու՞մ…

— Իսկ դու քիչ առաջ տեսա՞ր. չէ՞ որ քո աչքի առաջ էինք շինում,— ժպտաց պատանին։

— Տեսա…,— այժմ արդեն համոզված, որ կախարդների հետ գործ ունի, ետ-ետ քաշվելով շշնջաց շինականը,— բա մարդ արարածը սատանա կստեղծի՞… հա՛, հա՛, մի՜ ծիծաղեք… դուք երեքդ էլ կախարդներ եք… իսկ ձեր շինածը սատանի բան է, սատանի՜…— կրկնեց նա ահաբեկված ձայնով ու, մանգաղը մոռանալով, գլուխն առած՝ դուրս փախավ դարբնոցից…

Նրա հետևից քահ-քահ ծիծաղում էին ուրախ պատանիները. մինչ «վարդապետը» հենված իր մի ոտքին, մտքերի մեջ խորասուզված՝ դեռ երկար ժամանակ նայում էր ժամացույցին որը շարունակում էր իր կայտառ «չիկ-չիկ»-ը…

— Կատարյա՜լ է,— կրկնեց նա այժմ ավելի համոզված,— թող ծառայե…

հեռավոր գյուղերն ու ավանները և մինչև անգամ՝ քարանձավներում աղոթող մարդախույս ճգնավորներին։ Այն տեսնելու համար մարդիկ գալիս էին արահետներով ու խորախոր ձորերով, գալիս էին չհավատալով, տեսնում էին, վախից խաչակնքում, հետո էլի նայում ու սարսափած հեռանում։ Լինում էին և այնպիսիք, որ նույնիսկ չէին համարձակվում դարբնոցին մոտենալ, ուր ցերեկները արևից, իսկ գիշերները ներսում ճարճատող մարխի լույսից ծիածանի յոթ գույներով ճառագայթում էր հրաշք լուսամուտը։

Եվ երբ լուրը հասավ մոտիկ ու հեռավոր վանքերին, գյուղից դուրս ընկած մենավոր դարբնոցում պատվիրատուների փոխարեն մուտք գործեցին սովն ու չքավորությունը։ Սևամորուք ու սևազգեստ վանականները դժոխքի սարսափներով էին սպառնում նրանց, ովքեր գործ կունենային



digitised by A.R.A.R.@

«սատանայի հետ դաշնակցած» այդ օտարական-ների հետ...

Եվ էլ նրանց մոտ ոչ ոք չէր մտնում պատվեր-ներ տալու, էլ դարբնոցում ո՛չ թուր էին կռում, ո՛չ կացին, էլ ոչ ոքի չէին հետաքրքրում «ոսկե-ձեռք վարդպետի» զարդատուփերն ու զարդերը։ Անեծքի ահից շատերն առանց ափսոսանքի փշ-րում, գետն ու անդունդն էին նետում «դժոխքի բույրից» գյուղական գործիքներն ու զարդերը...

Ու աշնանային մի տխուր օր, երբ ամեհի քա-մին ասես հեկեկում էր Բռնակոթի մթնած ձորե-րում ու տերևաթափում լեռնային անտառները, փարաջաների փեշերը քամուն տված, սևագլուխ վանականները շինականների գլուխն անցած, եր-կաթյա խաչերն օդում թափահարելով, ահռելի անեծքներով ու սպառնալիքներով երևացին դեպի դարբնոցը տանող ամայի արահետի վրա։

Քիչ հետո համարյա թե ոչինչ չմնաց մենավոր դարբնոցից։ «Սատանի Չարխի» և ժամացույցի հետ նրանք ջարդուփշուր արին և հրաշք լուսա-մուտն ու շարականներ երգելով հեռացան...

Նրանք խնայեցին օտարականներին, ավելի ճիշտ, վախեցան ձեռք տալ, ու երբ արդեն ջարդարար ամբոխը էլ չէր երևում, երբ խորտակված դարբ-նոցի և կացարանի մեջ անարգել սուլում էր իրիկ-նային մրրիկը, մոտակա անտառի մեջ ապաստա-նած «անաստվածները» տուն վերադարձան։

Սակայն «վարդպետը» չդիմացավ այդ վշտին։ Նա մեռավ մի քանի օր անց, ու վերջին վայր-կյաններին, երբ թախծալի հայացքով հրաժեշտ էր տալիս իր որբացող աշակերտներին՝ շշնջաց.

— Կատարյալ էր... չթողին, որ ծառայեր...

Հետո... Հետո երկվորյակների նմանող պատա-նիները բոլորից լքված դարբնոցի առջև, ամբողջ ձմռանը։ չնայելով բքին ու ձյունամրրիկներին, ցրտից կաս-կարմիր կտրած, օրն ի բուն աշխատեցին մի տապանաքար, քանդակեցին վրան հրաշք լու-սամուտով գերանաշեն կացարանը, ապա դարբ-նոցը իր «սատանի չարխով», և ոլորուն սյունիկ-ների վրա թառած թռչունների կտուցների մեջ սեղմված ժամացույցն իր անշարժ սլաքով։ Ժա-մացույցի կողքին, հատկապես մեծ սիրով նրանք քանդակեցին և իրենց թանկագին «վարդպետին», այնպես, ինչպես տեսել էր նրան ահաբեկված շինականը։ Նրանք չմոռացան քանդակել և իրենց։ Նրանք երևի ցանկացան այդ քարի վրա գոնե մշտապես լինել իրենց «վարդպետի» հետ, մնալ դար ու դարեր անբաժան և երևի, անչափ գոհ այն բանից, որ քանդակված սլաքը միշտ անշարժ պիտի մնա, հիշեցնելով այն քաղցր վայրկյանը, երբ «վարդպետն» ասում էր «կատարյա՜լ է»...



Հետո, նրանք, երբ ձախակողմյան վերին ան-կյունում, մի նեղ ու երկարավուն փոսիկի մեջ առանց անունը հիշատակելու քանդակեցին «վարդ-պետի» մահվան թվականը՝ ՊԽ*, գարնանային մի օր, տապանաքարը դրին գերեզմանի վրա, ան-մխիթար լաց եղան մի վերջին անգամ ու հեռա-ցան...

Այնուհետև նրանց էլ ոչ ոք չտեսավ Բռնակո-թում. վերջին անգամ նրանց տեսավ միայն, դեռ նոր ծաղկած վայրի մասրենու տակ նախաճաշող, արդեն երիտասարդ դարձած հովիվը և այնքան ուղեկցեց հայացքով, մինչև որ նրանք անհայտա-ցան հեռու-հեռուներում...

Սակայն խավարամիտ ամբոխն ու վանականնե-րը չանհանգստացան։ Հենց նույն տարին իսկ, խաչերն օդում թափահարելով, սարսափազդու անեծքներ կարդալով, նրանք նորից երևացին դեպի կիսաքանդ ու ամայացած դարբնոցը տանող արա-հետի վրա և տապանաքարը տեղահան անելով գլորեցին ձորն ի վար, որպեսզի ոչ մի հետք չմնա «կախարդ վարդպետից», որպեսզի ոչ մի աչք չտեսնի նրա շիրմաքարին քանդակված «սատա-նայական ժամացույցը»։

Եվ այսպես անցան դարեր...

Եվ, կամաց-կամաց, մարդիկ մոռացան նրան,

* Հայոց 840 թվականը՝ մեր թվարկության 1391 տարին



digitised by A.R.A.R.@

և տապանաքարը մամռեց ծորի հատակում, և ոչ ոք չէր հիշում «վարդպետին»...

* * *

Եկավ 1704 թվականը։

Դա արդեն ուրիշ դար էր, ուրիշ ժամանակներ էին. քառասունվեց տարի էր, ինչ աշխարհին և անգամ խուլ Բռնակոթին ու վանքերի մեջ ծվարած վանականներին հայտնի էր ժամացույցի գյուտը, որ կատարել էր Հյուգենս անունով հոլանդացին։

Հյուգենս հոլանդացին...

Իսկ «վարդպե՞տը»...

Խե՜ղճ, մոռացված «վարդպետ», անանուն ու անհայտ «վարդպետ», կախարդ համարված, համեստ, լռակյաց ու հաշմանդա՜մ «վարդպետ»...

Ժամացույցի գյուտարար, նահատա՜կ «վարդպետ»...

Եվ ահա, 1704 թվականին...

1704 թվականին, երբ Հովասափ Աղվերանցին կառուցում էր Բռնակոթի եկեղեցին, մի շարք մոռացված ու անտեր տապանաքարերի հետ, դարերից ի վեր ծորամիջում մամռող «վարդպետի» շիրմաքարը դրեց եկեղեցու պատի մեջ, որպես հուշարձան մի ճարտար նահատակի, որ ասել էր. «Կատարյա՜լ է, թող ծառայե»...

Ես էլ եղա այդ վայրում ու, ինչպես ահաբեկված այն շինականը, սեփական աչքերով, տապանաքարի վրա տեսա լարվող ժամացույցը, մետաղամամլիչ հաստոցը, պտուտակահանը վզից կախած հաշմանդամ վարպետին ու երկվորյակների նմանող այն լավ պատանիներին։

Եվ, ո՞վ գիտե, գուցե և հենց նույն հնամենի մասրենուց սերած մի մասրենու տակ, հենց այնտեղ, որտեղ 1387 թվականի ամառային մի պայծառ օր նախաճաշում էր հովիվ պատանին, որոշեցի գրել այդ իսկապես «սատանայական» հայ մեքենագործի, դարերի խորքում ննջող անանուն «վարդպետի» մասին...

## ՈՍԿԵՐԻՉ ՀԱԿՈԲԸ

ՍԵՐՈԲ ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Թագավորի աթոռանիստ քաղաքում մի բարի, հնարագետ ոսկերիչ էր ապրում, անունը՝ Հակոբ։

Մի անգամ վարպետ Հակոբին մի մեծ դժբախտություն պատահեց։

Թագավորն իր շրջագայությունների ժամանակ միշտ անցնում էր այն փողոցով, որտեղ գտնվում էր ոսկերիչ Հակոբի փոքրիկ աշխատանոցը և, ամեն անգամ անցնելիս, լսում էր, թե ինչպես Հակոբը աշխատանքի ժամանակ միշտ երգում է միևնույն երգը.

«Ճշմարտությունը կա ու կլինի, ինչ էլ որ լինի...»

Թագավորի գլխում անավոր միտք է ծագում։ Որոշում է պատժել ոսկերչին, քանի որ նա թագավորին փառաբանելու փոխարեն երգում է ինչ-որ ճշմարտության մասին։

— Արի ես դրա գլխին այնպիսի խաղ սարքեմ,— ասում է թագավորը թիկնապահին,— որ ճշմարտությունն էլ մոռանա, իրեն էլ։

— Այդ ինչպե՞ս, թագավորն ապրած կենա։

— Ահա, թե ինչպես։ Ես նրան կտամ իմ մատանին, որ սարքի։

— Քո մատանուն ի՞նչ է եղել որ։



digitised by A.R.A.R.@

— Իմ մատանում ոչինչ չի եղել, դու լսիր մինչև վերջ. հենց որ վարպետը մատանին Թարեքը կդնի, ես նրան խոսքով կզբաղեցնեմ, դու գաղտնի կվերցնես մատանին. հասկացա՞ր...

— Հասկացա, Թագավորն ապրած կենա։

Երբ նրանք մտան ոսկերչի աշխատանոցը, վարպետը Թողեց իր սիրած երգն ու կանգնեց Թագավորի առաջ։

— Ինչպե՞ս է անունդ, վարպետ,—հարցրեց Թագավորը տեղում մեխված ոսկերչին։

—Հակոբ է, ամենակարող տեր,—մինչև գետին խոնարհվելով պատասխանեց վարպետը։

— Վերցրու՛ այս մատանին ու սարքի՛ր ակը։

Հակոբը խոնարհաբար վերցրեց մատանին, լավ զննեց ու, համոզվելով, որ մատանին սարքին է, դրեց Թարեքը և ուղղվեց տեղում՝ սպասելով Թագավորի նոր հրամանին։

— Ե՞րբ պատրաստ կլինի,— հարցրեց Թագավորը։

— Երբ կցանկանա ամենակարող տերը։

— Շաբաթ օրը մատանին պատրաստ ինձ մոտ կբերես,—հրամայեց Թագավորն ու շրջվեց։

— Աչքիս վրա, ամենակարո՛ղ տեր.— պատասխանեց Հակոբն ու ազատ շունչ քաշեց։

Հակոբի ու Թագավորի այդ փոքրիկ զրույցի պահին Թիկնապահը ետ վերցրեց մատանին, ինչպես պատվիրել էր Թագավորը, ու ճանապարհին հանձնեց տիրոջը։

Կամրջի վրա Թագավորը կանգ առավ ու մատանին գետը նետելով՝ ասաց.

Թող հիմա ճշմարտությունը մատանին գտնի։

* * *

Մինչև շաբաթ օրը երեք օր կար։ Հաջորդ օրը Հակոբը աշխատանոց մտավ, հիշեց Թագավորի պատվերը և զարմացավ, Թե ինչու Թագավորը այդքան երկար ժամանակ տվեց իրեն, չէ՞ որ մատանում ոչինչ չէր եղել։

Վարպետը նստեց իր մշտական տեղում և ցանկացավ ստուգել. գուցե ինքը սխալվե՞լ է... Նայեց Թարեքին, Թագավորի մատանին աչքով չընկավ. սառը քրտինք պատեց մարմինը։ «Արհեստանոցը գող է մտել»,—անցավ նրա մտքով։ Բայց ամեն ինչ իր տեղումն էր, ոչինչ չէր պակասել...

Հակոբը նորից փնտրեց, էլ անկյուն չԹողեց, բոլոր տեղերը մի քանի անգամ նայեց. սակայն մատանին չկար ու չկար... Վախից վարպետի աչքերը մԹնեցին, գլուխը պտտվեց ու նա փռվեց հատակին...

Երբ Հակոբը աչքերը բաց արեց, տեսավ, որ գտնըվում է տանը, անկողնում, հարևաններով շրջապատված։ Նա մի պահ չկարողացավ հիշել, Թե ինչ է պատահել իրեն և ինչու է պառկած անկողնում։



Սև ու սառած աչքերը դանդաղորեն սահեցնելով շուրջը նստածների վրայով՝ կամաց-կամաց տիրապետեց իրեն ու նստեց անկողնում։

— Ջու՛ր տվեք,—խնդրեց Հակոբը։

Կինը ջուր տվեց։ Խմեց ու ելավ տեղից։

Հակոբը հագնվելու կարիք չուներ, որովհետև պառկեցրել էին հագուստով։ Նստեց գետնին փռված գորգի վրա։ Նրան շրջապատեցին տեսակցուԹյան եկած բարեկամներն ու հարևանները։ Բոլորն ուզում էին իմանալ, Թե ինչ է պատահել վարպետին։

Սիրելի՛ բարեկամներ, մահը եկել շոքել է իմ դուռը, նա ցանկանում է խլել իմ կյանքը...

Բոլորի մարմնով սարսուռ անցավ, աչաբեկված նայեցին իրար, բայց չհասկացան Հակոբի հետ պատահածը։

— Ես ապրելու իրավունք ունեմ երկու օր միայն, որովհետև կորցրել եմ Թագավորի մատանին...

Ծանր լռություն տիրեց. կանայք հեկեկացին, տղամարդիկ անգամ սրբեցին արցունքները։

Հակոբի դժբախտության բոթը կայծակի արագությամբ տարածվեց քաղաքում ու շրջակա գյուղերի ծանոթ մարդկանց շրջանում և ծանր տպավորություն գործեց նրանց վրա։

Սկսվեց բարեկամների ու ծանոթների հոսանքը դեպի Հակոբի տունը։

Հակոբը թիկն տված գորգի վրա դրված բարձին՝ տխուր ընդունում էր այցելուներին, որոնք լուռ գալիս-գնում էին՝ առանց հույս ու մխիթարանք արտահայտող բառ ասելու։

Ութերորդ օրը, երեկոյան այցելուների մեջ երևաց և ձկնորս Օհանը։ Նա գետից մի քանի ձուկ էր բռնել ու բերել հետը։ Օհանի երևալը աշխուժացրեց Հակոբին, դրա համար էլ կարգադրեց ճաշ պատրաստել։ Կինը կատարեց ամուսնու ցանկությունը՝ եփելով և Օհանի բերած ձկները։

Ընթրիքից հետո, երբ բոլորը հրաժեշտ տվին, թողնելով ամուսիններին մենակ, կինը Օհանի բերած ձկան փորից հանած մատանին բերեց ու հանձնեց ամուսնուն։ Հակոբը ուշի-ուշով զննեց մատանին ու կայծակնահարի նման ցատկեց տեղից. մատանին ծանոթ էր նրան։ Նա մատանին բռնել էր աչքերի առաջ, նայում էր ամեն կողմից, շուռ-մուռ տալիս ափի մեջ և աչքերին չէր հավատում... Կինը շվարած դիտում էր ամուսնու տարօրինակ շարժումները։ Հանկարծ Հակոբը գոչեց.

— Սա՜ է, սա՜...

* * *

Շաբաթ օրը, վաղ առավոտյան Հակոբը շուկայից թագավորի համար նվերներ գնեց ընդունված կարգով, մատանին էլ կապեց մի գունավոր թաշկինակով ու այդ բոլորը խնամքով դասավորեց մի մեծ սինիի մեջ։

Երբ արևը պարուրեց փոշեպատ քաղաքը, Հակոբը երևաց պալատը տանող փողոցում՝ սինին գլխին դրած։ Նա գնում էր երգելով իր սիրած երգը։ «Ճշմարտություն կա և կլինի, ինչ էլ որ լինի»։

Ամբողջ քաղաքը դիտում էր Հակոբին ու զարմանում, թե ինչպես է մարդը գնում գլխատվելու։

Հակոբը ներկայացավ պալատ և սինին դրեց գահին բազմած թագավորի առաջ, ինքն էլ չոքեց ու գլխիկոր սպասեց նրա հրամանին։

— Բերե՞լ ես մատանին, վարպետ,— արհամարհանքով ու տիրաբար հարցրեց թագավորը։

— Այո՛, բերել եմ, ողորմած տեր, թող թագավորի հովանին անպակաս լինի մեր գլխից։

— Հա՜, հա՜, հա՜.— ծիծաղեց թագավորը՝ մի արհամարհական հայացք ձգելով առաջը չոքած Հակոբի վրա։

— Հրամայեցեք մատուցե՛լ ձեզ, ողորմա՜ծ տեր,— ասաց Հակոբը։

— Ապա մի ցո՛ւյց տուր, հա՜, հա՜, հա՜, հա՜,— ասաց ու ավելի բարձր հռհռաց թագավորը։

Հակոբը բաց արավ թաշկինակը ու մատանին հանձնեց թագավորին։ Թագավորը մատանին տեսնելով՝ այնպես այլայլվեց, որ քիչ մնաց խելքահան լինի, բայց արքայական դիրքը թույլ չտվեց, անսահման զարմանք արտահայտելով թեթևացնել իրեն, ու իսկույն կանչեց Թիկնապահին։

Թիկնապահը ներկայացավ անմիջապես։

— Դու չտեսա՞ր, որ ես մատանին շպրտեցի գետը, որպեսզի անհետ կորչի։

— Տեսա, ողորմա՜ծ տեր,— պատասխանեց թիկնապահը։

— Սա իմ մատանին չէ՞,— հարցրեց թագավորը ցույց տալով մատանին։

— Այո՛, հենց դա է, որ կա,— հաստատեց թիկնապահը։

Քիչ հետո ողջ պալատականները հավաքվեցին ու հաստատեցին, որ թագավորի մատանին է։

— Ասա՛ ինձ, վարպե՛տ, որտեղի՞ց և ի՞նչ հնարքով մատանին ընկավ քո ձեռքը,— հարցրեց թագավորը։

— Թագավորն ապրած կենա, դուք ցանկացաք զվարճանալ նվաստիս կորուստով, բայց բնությունը գործեց իմ օգտին։ Ձեր ձեռքով գետը նետած մատանին բարի ձուկը կուլ տվեց ու այցի եկավ ինձ, որովհետև ես արդար եմ և գլխատվելու համար չեմ ծնվել...

— Հզոր արարչի կամքը թող լինի, գնա ու ապրի՛ր,— ասաց թագավորը։

Քիչ հետո Հակոբը քայլում էր փողոցով ու ծոր տալիս սիրած երգը.

«Ճշմարտությունը կա ու կլինի, ինչ որ լինի»



8229-65

digitised by A.R.A.R.@

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ



ԱԼԲԵՐՏ ՊՈՂՈՍՅԱՆ «Հացթուխը»

Մի օր Գագիկը դասարան մտնելով հայտարարեց.

— Երեխանե՜ր. լսեք մի շատ հետաքրքիր նամակ կարդամ։ Մոսկվայից է, մայրիկիս են գրել։ Իհարկե, սկզբից չեմ կարդա։

Եվ Գագիկը, սկսեց կարդալ այն մասը, որ համարյա անգիր էր արել արդեն։

«... Վերջին անգամ ես չկարողացա ձեզ տեսնել, որ իմ տպավորությունն հայտնեի, ուստի գրում եմ։ Ուզում եմ ասել միայն, որ ես իմ գլուխն եմ խոնարհում հայ ժողովրդի ստեղծագործ զավակների առաջ։ Իսկապես որ դուք իրավունք ունեք պարծենալու, աշխարհում իր նմանը չունեցող ինքնուս ստեղծագործողների այդպիսի ցուցահանդեսով։ Մեր կոնստրուկտորներն ու մյուս ընկերները խնդրել են հաղորդել նաև իրե՛նց հիացմունքը...»

Գագիկը լռեց և մինչ ինքնագոհ կերպով նայում էր շուրջը, ոգևորված երեխաները նամակը վերցրեցին, որ նորից կարդան։

— Տղաներ, իսկ ո՞վ է եղել այդ թանգարանում,— հարցրեց Գագիկը։

Բոլորը լուռ, ուսերը վեր քաշելով, զարմացած իրար են նայում։

— Ո՛չ մեկդ չի՞ տեսել. Ամալյան ու Գևորգն է՞լ չեն եղել։ Եվ դեռ ասում են, թե ոչ մի ցուցահանդես բաց չեն թողնում,— ասաց Գագիկը։

— Իսկ դու ինքդ տեսե՞լ ես, որ խոսում ես,— չորս կողմի՛ց բղավեցին երեխաները։

— Երեկ. հենց այս նամակը ստանալուց հետո, մայրիկիս հետ գնացինք։ Իսկ մինչ այդ, թանգարանի գոյության մասին անգամ ոչինչ չգիտեի,— անկեղծորեն խոստովանեց Գագիկը։

— Իսկ որտե՞ղ է գտնվում,— հարցրեցին մի քանիսը միաբերան։

— Դե լսեք, ուրեմն՝ Աբովյանի պուրակի մոտ մի սուրանկյուն շենք կա։ Հենց այդ շենքում էլ գտնվում է ժողովրդական ստեղծագործության թանգարանը։ Մայրիկիս հետ ներս մտանք։ Սպիտակ, մարմարյա աստիճաններով բարձրացանք երկրորդ հարկ, մեր դեմ բացվեց թանգարանի ցուցասրահի մուտքը։ Ներս մտանք... Այնքան շատ էին ցուցանմուշները և այնքան բազմազան, որ ես և մայրիկս մի պահ շփոթվեցինք։ Բայց հենց այդ պահին ներս մտավ թանգարանի հիմնադիրը՝ ութսունամյա Բաբայանը, որ մինչև այժմ էլ մեծ նվիրվածությամբ ու սիրով զբաղվում է թանգարանի աշխատանքներով։ Նրա հետ ներս մտավ նաև ընկ. Ռ. Աթայանը։ Իմանալով մեր ցանկությունը ընկ. Աթայանը սիրով սկսեց ծանոթացնել մեզ բոլոր ցուցանմուշների հետ։ Իսկ



ՍԱՀԱԿ ՍԱՀԱԿՅԱՆ «Մանի՛ր, մանի՛ր, իմ ճախարա՛կ»

digitised by A.R.A.R.@

# ԳՈՀԱՐՆԵՐ

մենք հափշտակված, համարյա վերացած կանգ էինք առնում ցուցանմուշների առաջ, որոնց հեղինակները ոչ թե պրոֆեսիոնալ արվեստագետներ են, այլ՝ շարքային բանվորներ, ուսուցիչներ, կոլտնտեսականներ, տնայ՚ին տնտեսուհիներ և այլն... Դե,. էլ ի՞նչ պատմեմ. վաղը բոլորս էլ կգնանք և ամեն ինչ մեր աչքով կտեսնենք...



ՍԱՀԱԿ ՍԱՀԱԿՅԱՆ «Ինձի Բաղդիկ կըսեն»

Բայց նրան չհաջողվեց անգամ դպրոցն ավարտել... Նա գործարան գնաց։ Մտավ ձուլարան։ Ցերեկները աշխատում էր, իսկ երեկոները կարդում, քանդակում։

Անցան տարիներ... բանակից վերադառնալով և



ՏԻՏՈՆԻԿ ԵՐԵՄՅԱՆ «Տիկնիկներ»

Գագիկն իրավացի էր։ Մի՞թե նա կկարողանար մի անգամ տեսնելով, մանրամասն պատմել այդ հիանալի թանգարանի մասին։ Ես որ մի քանի անգամ եմ եղել այնտեղ, էլի դժվարանում եմ այդ անել։ Չնայած դրան, երեխաներ, ես կփորձեմ մի քանի խոսք ասել թանգարանի ցուցանմուշների ու նրանց հեղինակներից մի քանիսի մասին...

...Սահակը չէր հավատում, թե կարող է քանդակագործ դառնալ։ Բայց նա շա՜տ, անչափ շատ էր սիրում քանդակել։ Ինչ ընկներ ձեռքը՝ կավիճ, պլաստիլին թե կավ, կաշխատեր դրանից մի բան սարքել և երբեք գոհ չէր մնում իր սարքածից...

Անցնում էին օրեր, ամիսներ... Ստեփանավանի կախարդիչ բնությունը և նրա կարդացած բազմաթիվ գեղարվեստական գրքերը. որոնցից բոլորից շատ սիրում էր Հակոբ Պարոնյանի ստեղծագործությունները, զարգացրին պատանու ճաշակը, լայնացրին մտահորիզոնը...



ՍԱՀԱԿ ՍԱՀԱԿՅԱՆ «Ըմբոստ պատանին»

digitised by A.R.A.R.@

մնալով քաղաքում. Սահակը համարյա գիշերներ էր լուսացնում քանդակելով: Եվ ահա, 1956 թվականին, իր ընկերներից մեկի առաջնորդությամբ, նա իր առաջին գործը բերեց ժողովրդական ստեղծագործության տուն: Ընկեր Բաբայանը ջերմությամբ, բայց և խիստ պահանջկոտությամբ ընդունեց Սահակին: Նրա բոլոր խորհուրդները պատանու համար նորություններ էին: Սահակը Բաբայանի մոտից դուրս եկավ կարծես ավելի իմաստնացած և նոր եռանդով սկսեց ստեղծագործել:

Այժմ թանգարանի ամենաուշագրավ ցուցանմուշները Սահակի բազմաթիվ աշխատանքներն են... Հակոբ Պարոնյանի կերպարները այդ կավե արձանների մեջ ուղղակի կենդանություն են ստացել: Նրա «Մանի՛ր,-մանի՛ր, իմ ճախարա՛կ», «Բաջ. Նազարը», «Օտարամոլը», «Պաղտասար աղբարը», «Բամբասող կանայք» և այլ աշխատանքներ հիացմունք են պատճառում դիտողին: Եվ պատահական չէ, որ կարծիքների գրքույկում գրված է, որ նրա աշխատանքները արժանի են համաշխարհային համբավի:

Բայց ինչո՞ւ միայն Սահակի. չէ՞ որ թանգարանը չափազանց հարուստ է նման գանձերով: Ահա «Անե՛ծք պատերազմին» ցուցանմուշը: Պատերազմում ոտքը կորցրած, հենափայտերով զինվորը տուն է վերադարձել և տունը ավերակ է տեսել: Կանգնում ես այդ քանդակի առաջ, որի հեղինակը Լենինականի տեքստիլ ֆաբրիկայի բանվոր Լասիկ Հովսեփյանն է, և հազիվ ես զսպում արցունքներդ:

Եվ կամ մի՞թե չեք զարմանա, եթե ասեմ, որ Հայրենական պատերազմի հաշմանդամ Պետրոսյան Արտաշեսը, որն աշխատում է մեկ ձեռքով, ունի խճաքանդակ աշխատանքներ. «Մհերով Մաշտոց», «Լենին», «Շահումյան»: Նա ունի նաև քարից քանդակած աշխատանքներ:

Իսկ սրահի մյուս անկյունում դրված ապակուց պատրաստված մեծ վազը, որը բաղկացած է խաղողի ողկույզներով, ոլթերով և տերևներով կապակցված չորս շերտերից, իր նրբությամբ և վարպետությամբ զարմանք է պատճառում նույնիսկ նշանավոր արվեստագետներին: Դրա հեղինակը, որ գրասենյակային աշխատող Սիմոնյան Միքայելն է, իր այդ մեծ վազից բացի, ունի նաև գունավոր հախճապակուց պատրաստված մինիատյուրներ, որոնք հեռվից աննկատելի են, պետք է միայն մոտիկից նայել:

Ուշադրության արժանի ցուցանմուշները չափազանց շատ են և հնարավոր չէ այդ բոլորի մասին գրել: Բայց դուք, երեխանե՛ր, կարող եք այցելել ժողովրդական ստեղծագործության տուն թանգարանը և տեսնել այդ հոյակապ ստեղծագործությունները ձեր սեփական աչքերով:

Ա. ՍԱՀԱԿՅԱՆ




(Հեքիաթ)

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Երբ Արմենուհին սկսեց դպրոց գնալ, շատ տխրեց նրա տիկնիկը՝ Նանարը: Դե, էլ ինչպե՞ս չտխրեր. պետք է մենակ նստեր ու սպասեր Արմենուհուն: Այդ դասերն էլ այնքան երկար էին տևում՝ սպասի՜ր, սպասի՜ր...

Վերջապես վերադառնում էր Արմենուհին, բայց չէր խաղում Նանարի հետ, հա՜ գրում էր, հա՜ կարդում: Ազատ ժամանակ էլ անվերջ դպրոցի մասին էր պատմում: Այնքան էլ բա՜ն կար պատմելու:

Լսում էր Նանարը, լսում ու տխրում էր: Պատահում էր, որ նույնիսկ լացը գալիս էր: Այնպես էր ուզում գոնե մի անգամ լինել դպրոցում՝ տեսնել ընկեր Մանուշին, Արմենուհու նոր ընկերներին, նրանց դասարանը, սեղան-նստարանները, գրատախտակը, սպիտակ կավիճը...

Մի անգամ Նանարը խնդրեց Արմենուհուն, որ իրեն էլ տանի դպրոց:

— Ջե՛, ի՞նչ ես ասում, ամոթ է...
— Ի՞նչը,— լացակումած հարցրեց Նանարը:
— Որ տիկնիկը դպրոց գնա...
— Ի՞նչ կլինի ախր...
— Բոլորն ինձ վրա կծիծաղեն:

Նանարն Արմենուհու ասածից ոչինչ չհասկացավ: Նայեց իր՝ նոր ու գեղեցիկ զգեստին, ստուգեց ձեռքերը, մոտեցավ հայելուն, նայեց դեմքին, ամեն ինչ կանոնավոր էր ու մաքուր, էլ ինչո՞ւ պիտի ծիծաղեին:

«Երանի այն ժամանակ, երբ Արմենուհին դպրոց չէր գնում, ուր որ գնում էր, ինձ էլ հետը տանում էր»,— մտածում էր Նանարը: «Պատահում էր, որ մայրիկը բարկանում էր. «Մի կողմ դիր տիկնիկդ»,—



digitised by A.R.A.R.@

ասում էր նա, Արմենուհին լաց էր լինում և չէր հանգստանում մինչև մայրիկը համաձայնում էր...»

Իսկ հիմա՞...

Մտածում էր Նանարն ու թաքուն-թաքուն սրբում աչքերը։

Բայց մի օր Արմենուհին խղճաց Նանարին.

— Լավ, Նանար ջան, վաղը կգաս ինձ հետ դպրոց...

Նանարն ուրախությունից ոչինչ ասել չկարողացավ, միայն իր սիրունիկ աչքերը բացուխուփ արեց ու գլուխը քսեց Արմենուհու ծնկներին։

— Դու կմտնես պայուսակիս մեջ, տես հա՛, գլուխդ բոլորովին դուրս չհանես, քեզ ոչ ոք չպետք է տեսնի։

— Շատ լավ,— պատասխանեց Նանարը։

Այդ գիշեր նա ուրախությունից քնել չկարողացավ։

Տեսնելու էր դ պ ր ո ց ը...

Նա վախենում էր, որ կարող է քնով ընկնել ու չկարողանա արթնանալ, դրա համար հենց որ Արմենուհին գրքերը դասավորեց պայուսակի մեջ, Նանարը կամաց սողաց ու մտավ ներս և այնտեղ՝ գրքերի արանքում էլ քնեց... Բայց ամբողջ գիշեր համարյա թե քնել չկարողացավ՝ անվերջ բարձրաձայն հռհռում էր՝ այբբենարանից դուրս էին թափվել տառերն ու խտուտ էին տալիս Նանարի մեջքը։ Մեկ էլ աչքերը փակվել էին, երբ թվաբանությունն դասագրքից դուրս թռավ զերոն։ Նանարն ասում էր, թե նա ոչինչ չարժե, իսկ զերոն ապացուցում էր, որ ինքը իբր թե թվանշանների արքան է։ Ո՞վ գիտի, դեռ ինչքան ստեր էր հորինելու։ Բայց ահա լսվեց Արմենուհու ձայնը.

— Նանար, դու արդեն մտե՞լ ես պայուսակիս մեջ։

— Այո։

— Դե, ուրեմն գնացինք, պայմանը չմոռանաս։

Ահա և նրանք դպրոցում են։

Լավն էր դպրոցը, ամեն ինչ դուր եկավ Նանարին՝ հատկապես զանգի ձայնը։

Ինչո՞ւ է այսպես, ինչո՞ւ է այնպես, հազար ու մի հարց էր ուզում տալ Նանարը, ուզում էր շատ բան հասկանալ, բայց...

Եվ ինքն էլ չիմացավ ինչպես, երկրորդ դասից հետո, դասամիջոցին դուրս թռավ պայուսակից։ Դասարանում ոչ ոք չկար, բոլորը միջանցքում էին։ Նա վազվզեց այս ու այն կողմ, հետո մոտեցավ գրատախտակին, վերցրեց ջնջոցը և մաքուր մաքրեց գրատախտակը։ Հետո ուզում էր դասարանում թափված թ թերն էլ հավաքել, բայց զանգը հնչեց, Նանարը հևիհև իրեն գցեց պայուսակի մեջ։

Աշակերտները ներս լցվեցին ու արագ նստեցին տեղերը։ Նրանց հետևից անմիջապես մտավ և ուսուցչուհին, նայեց գրատախտակին ու բարկացած ասաց.

— Ջէ՞ որ ես ասացի գրատախտակը չմաքրեք, ինչո՞ւ եք մաքրել։

Ամբողջ դասարանը նստել էր քարի նման։ Իսկ ուսուցչուհին զայրանում էր ոչ այնքան գրատախտակի վրա գրվածը ջնջելու համար, ինչքան այն բանի համար, որ ոչ ոք չէր խոստովանում, թե ով է մաքրել։

Ա՛յ քեզ զարմանալի բան, Նանարն էլ սպասում էր, թե նա պիտի գովի գրատախտակը մաքրողին։

Քիչ էր մնում Նանարը դուրս թռչեր ու ասեր, որ ինքն է մաքրել, բայց վախենում էր։



Քիչ անց, գրատախտակի վրա ուսուցչուհին նորից գրեց, և բոլորը լուռ արտագրում էին, միայն Նանարն էր արցունքները քսում Արմենուհու գրքերին։ Ինչ աներ հապա, որ լաց չլիներ, իր պատճառով այդ օրվա հերթապահները՝ Սոսն ու Լալիկը «2» ստացան՝ վարքից։



digitised by A.R.A.R.@

Տանը, երբ Արմենուհին պայուսակից հանեց Նանարին, տեսավ, որ նա գունատ էր ու տխուր։

— Ի՞նչ է պատահել։

Նանարն ամեն ինչ պատմեց։

Արմենուհին թափահարեց գլուխն ու ասաց.

— Այլևս դպրոցի երես չես տեսնի։

Մյուս օրը վաղ առավոտյան, երբ Արմենուհին պայուսակը վերցրեց և վազեց դուրս, ճանապարհին զգաց, որ պայուսակը ծանր է։ Դրեց ծնկներին, բաց արեց՝ Նանարն էր։

— Դո՛ւ...

Նանարը ձայն չհանեց։ Ի՞նչ աներ Արմենուհին, եթե ետ դառնար, դասից կուշանար։ Արագ փակեց պայուսակն ու վազեց։

Առաջին դասը հայոց լեզու էր։ Նանարը հետաքրքրությամբ լսում էր ընկեր Մանուշին. ճիշտ է, նրա ասածներից ոչինչ չէր հասկանում, բայց այնպես դուր էր գալիս նրա ձայնը, և որքան շատ էր լսում, այնքան շատ էր ուզում տեսնել, գոնե մեկ անգամ տեսնել նրան։





Դասամիջոցին Արմենուհին չէր հեռանում պայուսակի մոտից, ոչ մի դասամիջոցի դուրս չգնաց։

Չորրորդ դասին գրավոր աշխատանք էր։ Դեռ առաջին դասից Նանարի ուշադրությունը գրավել էր Փայլակ անունով մի տղա, որի անունը ուսուցչուհին քանի՜ անգամ էր արդեն տվել։

Փայլակը ամբողջ դասերի ընթացքում այս ու այն կողմ էր նայում, սրան-նրան խփում։ Հիմա էլ Նանարը սեղանի տակից տեսավ, թե նա ինչպես դիտավորյալ հատակին խփելով՝ փշացրեց իր ծայրը։

— Դու ինչու՞ չես գրում, Փայլակ,— նրան մոտեցավ ուսուցչուհին։

— Ծայր չունեմ, ընկեր Մանուշ,— արդարացավ նա։

Ուսուցչուհին մի ծայր վերցրեց տուփի միջից ու տվեց նրան։

— Վերցրու, վերջինն է, և գրիր,— ասաց նա։

Բայց ուսուցչուհին դեռ ոտքը չէր քաշել, նորից Փայլակը այս ծայրն էլ դիտմամբ փշացրեց։

— Ընկեր Մանուշ, չի գրում, քիթը ջարդված է,— ասաց նա։

Նանարն այլևս համբերել չկարողացավ, դուրս սողաց պայուսակից ու, երեխաների ոտքերի արանքներից անցնելով, մոտեցավ Փայլակի նստարանին։

—Վա՜յ, մամա՜ ջան,— տեղից ծառս եղավ Փայլակը։

— Ի՞նչ պատահեց,— վախեցած մոտեցավ ուսուցչուհին։

— Օձը կծե՜ց... Օ՜ձ կա այստեղ...

Մի քանիսը վեր թռան նստած տեղերից, նայեցին սեղանի, նստարանի տակը՝ ոչինչ չկար։

Փայլակին ուսուցչուհին անկյուն կանգնեցրեց։ Նա լաց էր լինում, բայց ոչ ոք չէր հավատում նրան։

Միայն Նանարը գիտեր, թե ինչպես կարող էր ցավել տղայի ոտքը։ Նա սրբեց բերանը և սուս ու փուս տեղավորվեց պայուսակում։ Նա խղճում էր Փայլակին ոչ թե նրա համար, որ կծեց նրա ոտքը, այլ նրա, որ ոչ ոք չէր հավատում նրան։

Այդ օրը Արմենուհին Նանարին պայուսակից հանելիս ասաց.

— Ապրես, այսօր լավ պահեցիր քեզ։

— Վաղն էլ գամ։

— Եթե այսօրվա նման կարողանաս պայուսակից դուրս չգալ։ Հա՜, ասենք, մեր դասարանում օձ կա, որ դուրս գաս, քեզ կկծի։

— Վա՜յ, ո՞ւմ է կծել։

— Բա չիմացա՞ր, Փայլակին։

— Իմացա, բայց դու չհավատացիր Փայլակին։ Ոչ ոք էլ չհավատաց,— գլուխն օրորելով ասաց Նանարը։

— Վա՜յ Նանար, վա՜յ, քեզ խաբել չի լինի։

— Հապա ինչո՞ւ այնպես վեր թռավ Փայլակը։

— Դիտմամբ արեց։

— Խե՜ղճ Փայլակ։

— Ինչո՞ւ ես խղճում նրան։

— Չգիտեմ։

— Պայուսակիս մեջ տեղ չկա,— երեկոյան գրքերը դասավորելուց հետո ասաց Արմենուհին։— Այլևս



digitised by A.R.A.R.@

չխցկվե՛ս պայուսակիս մեջ ու գաս դպրոց և դեռ ծույլիկներին էլ պաշտպանես, — գոռաց նա ու տարավ պայուսակը թաքցնելու, որ Նանարը չգտնի։

Միևնույն էր, Նանարը նորից էր ուզում ընկնել դպրոց, գոնե մի անգամ, վերջին անգամ, որ տեսներ ընկեր Մանուշին։ Նա սեղանի տակից տեսել էր նրա ոտքերը, կրունկավոր կոշիկները, որոնցով նա այնպես գեղեցիկ էր քայլում, լսել էր նրա ձայնը, ուզում էր տեսնել աչքերը, շրթունքները, մազերը, գոնե մի անգամ։

Ու Նանարը նորից մտավ Արմենուհու պայուսա՛կի մեջ, բայց ոչ թե երեկոյան, այլ առավոտյան, երբ Արմենուհին արդեն ստուգել էր պայուսակը և համոզվել, որ Նանարը չկա։

Կամաց-կամաց Արմենուհին հանգստացավ, հավատաց և տարվեց իր գործերով։

«Դե, հո իմ տիկնիկը հասարակ տիկնիկ չի, նա գիտի խոսել, վազել, երգել, պարել, հիմա տուն հասած կլինի», — մտածեց Արմենուհին ու վազեց դուրս՝ ընկերների հետ խաղալու։

Դասերից հետո Արմենուհին ճանապարհին ոչ թե քայլում էր, այլ՝ վազում։

— Վա՜յ, Նանարը տանը չէ։

Այդ գիշեր Արմենուհին երազում անվերջ Նանարին էր որոնում։

Եվ գտավ։ Ինչպես երազում տեսել էր, առավոտյան Նանարը թակեց դուռը։

— Ո՞րտեղ էիր։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Հենց այն պահին, երբ Արմենուհին մտել էր դասարան, տղաներից երկուսը իրար հրեցին, կպան Արմենուհու պայուսակին, պայուսակը բացվեց, երևացին տիկնիկի շեկլիկ մազերը։

— Վա՜յ, Արմենուհին տիկնի՜կ է խաղում, Արմենուհին տիկնի՜կ է բերել դպրոց, — գոռացին տղաներն ու արագ խլեցին Արմենուհու Նանարին։ Սկսեցին քաշել՝ մեկը ոտքերից, մյուսը՝ ձեռքերից, այն էր հա՛ պոկպկելու էին, երբ ներս մտավ ուսուցչուհին։ Նանարը իսկույն թռավ ու մտավ ուսուցչուհու պայուսակի մեջ, այնտեղ երկու կապոց տետրեր կային, նա այնպես ծածկվեց, որ նույնիսկ ընկեր Մանուշը չնկատեց։

Արմենուհին լաց էր լինում, պահանջում էր տիկնիկը, տղաները երդվում էին, որ իրենց մոտ չմնաց։

— Ընկեր Մանուշենց տանը։

— Ընկեր Մանուշենց տա՞նը։

— Այո։

Արմենուհու աչքերը լայնացան։

— Հետո՞։

— Հետո էլ ի՞նչ, նրանց տանն էլ քնեցի։

— Պատմիր բոլորը, մանրամասն պատմիր։

Նանարը ճպճպացնում էր բերանն ու հեռավոր երկրներ էքսկուրսիա մեկնած մարդու նման պատմում էր։ Պատմում էր ու օրորում գլուխը։

«Ի՜նչ երջանկություն... նստել ընկեր Մանուշի կողքին, նրա հետ միասին ճաշել և նրանց տանն էլ քնել»։

— Երանի՜ քեզ, Նանար, — կամաց շշնջաց Արմենուհին։



digitised by A.R.A.R.@



# Երկնագույն ՀՈՒԼՈՒՆՔԸ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ, ԻՍԿ Ի՞ՆՉ ԿԼԻՆԻ ՀԵՏՈ

Մյուս օրը, հենց այն պահին, երբ Կարոլինկան վերջացնում էր նախաճաշը, լսվեց պայմանական սուլոցը։ Այդ Պետրիկն էր Կարոլինկային ազդանշան տալիս, թե ինքն արդեն բակումն է և սպասում է նրան։

— Դե, այսօր ի՞նչ պիտի անենք, — շտապ հարցրեց նա։

— Սպասի՛ր, — լուրջ-լուրջ պատասխանեց Կարոլինկան, — սարսափելի բան է կատարվել։ Չգիտեմ ինչ անել։

—Ի՞-ի՞-ի՞նչ։ Հո չե՞ս կորցրել,—վախեցած հարցրեց Պետրիկը։

Կարոլինկան բացասաբար շարժեց գլուխը. ոչ, չի կորցրել։ Բայց... ինչպե՞ս բացատրել... հուլունքը, հուլունքը մի տեսակ թափանցիկ է դարձել, կարծես գունատվել է։

Կարոլինկան գրպանից հանեց դեղորայքի փոքրիկ տուփը։ Երկնագույն հուլունքը դրված էր բամբակե վարդագույն բարձիկի վրա, իսկ բամբակի մի փաթիլ էլ վերմակի նման գցած էր վրան։

— Տե՛ս, տե՛ս, թե ինչքան է գունատվել։ Պետրիկ, նրա հետ ինչ-որ բան է կատարվում։ Հիվանդացած չլինի՞։

Միայն այն միտքը, որ հուլունքը կարող է հիվանդ լինել, այնքան վշտացրեց աղջկան, որ նա լաց եղավ։

— Հուլո՜ւնք ջան, — մեղմորեն շշնջաց Կարոլինկան և չնկատեց, որ արցունքի մի կաթիլ ընկավ հուլունքի վրա։

— Լաց մի՛ լինի, Կարոլի՛նկա, — խոսեց հուլունքը շշուկով։ — Ես մոռացել էի քեզ ասել մի կարևոր բան։ Քո ամեն մի ցանկությունը կատարելիս, ես այնքան ուժասպառ եմ լինում, որ կորցնում եմ գույնս։ Հիշի՛ր, ուրեմն, երբ ես բոլորովին թափանցիկ դառնամ, էլ չեմ կարող քո ցանկությունները կատարել։

Սկիզբը՝ նախորդ համարում։

— Հուլո՛ւնք, սիրելի՜ս... — Կարոլինկան ուզեց էլի ինչ-որ բան հարցնել, բայց արևի ճառագայթը, որ ընկել էր Կարոլինկայի ափին, չորացրեց արցունքի կաթիլը. իսկ չոր ժամանակ հուլունքը չէր խոսում։

— Լսեցի՞ր, Պետրի՛կ, — վերջապես խոսեց Կարոլինկան։

— Լսեցի։ — Այդ պահին Պետրիկն էլ շատ լուրջ և մտահոգ էր։ — Մենք պետք է լրջորեն մտածենք այդ մասին... Միայն թե հարկավոր է մտածելու համար մի հանգիստ տեղ գտնել։

— Այգուց լավ տեղ չկա, գնանք այգի,— վճռեց Կարոլինկան։

Նրանք այնքան էին մտահոգված իրենց հուլունքի բախտով, որ նույնիսկ չնկատեցին այգու ցանկապատին փակցված հայտարարությունը և նրա շուրջը խռնված երեխաներին ու մեծահասակներին։ Ոչ մի բանի վրա ուշադրություն չդարձնելով՝ Պետրիկն ու Կարոլինկան այգի մտան և իսկույն թեքվեցին դեպի սովերաշատ ծառուղին, ուր մի քարե նստարան էր դրված։ Այնտեղ սովորաբար քիչ երեխաներ էին լինում, և նրանք կարող էին հանգիստ խոսել իրենց գործի մասին։ Երբ նրանք նստեցին և համոզվեցին, որ ոչ ոք իրենց չի լսում, Պետրիկը խնդրեց.

— Տուր մի անգամ է՛լ նայեմ, տեսնեմ իրո՞ք շատ է գունատվել։

— Տե՛ս։

Այո՛, ճիշտ որ շատ է գունատվել, - ասաց Պետրիկը։

— Տեսար, չէ՞, — տխուր հառաչեց Կարոլինկան, — խե՜ղճ հուլունք, ես նրան շատ եմ խղճում։

— Տեսնես կարելի՞ է հիմա նրանից որևէ բան խնդրել, — Պետրիկը շատ էր հուսահատվել։

— Եթե միայն դա չափազանց կարևոր է։

— Լավ, հիմա մենք նրան ոչինչ չենք խնդրի,— վճռեց Պետրիկը, — մինչև որ մի կարևոր բան չպատահի։

Ճոճանակների հրապարակում նրանք հանդիպեցին Լեշեկին և Յանյային, իսկ քիչ անց, նրանց մոտեցան Դորոտան և Ագասյան։ Իսկ նրանց հետևից քարշ էր գալիս Վալդեկը։ Միայն թե նա մի տեսակ փոխվել էր՝ բոլորովին չարություն չէր անում և ոչ ոքի չէր անհանգստացնում, լուռ նայում էր չորս կողմը։ Իսկ հետո գլուխը կախ մոտեցավ ճոճանակին։

— Դե, Լեշե՛կ, ճոճվե՞նք, — ուրախ հարցրեց Պետրիկը։



digitised by A.R.A.R.@

— Ճռճվենք, — անտարբեր գլխով արեց Լեշեկը. կարծես քունը տանիլիս կամ տրամադրությունն ընկած լիներ։

— Լեշե՛կ, այսօր մի տեսակ աչքիս փոխվել ես։ Ինչո՞ւ ես քիթդ կախել, հը՞։

Իսկ ինչո՞ւ պիտի ուրախ լինեմ, չէ՞ որ այգին վաղվանից փակվում է։ Այսօր մենք վերջին անգամ ենք խաղում այստեղ։

— Ո՞նց թե «վերջին անգամ», — զարմացավ Կարոյինկյանը։ — Ի՞նչ է պատահել։

Գնանք աչքովդ տես, — ասաց Լեշեկը և, ցած թռչելով ճոճանակից, բռնեց Պետրիկի ձեռքը ու քարշ տվեց դեպի այգու մուտքը։ Այնտեղ դեռ շարունակում էին մարդիկ հավաքվել և կարդալ ցանկապատին փակցված հայտարարությու-



նը։ Կարոյինկյան և Յանյան վազեցին տղաների հետևից։

Կարդացեք, — հուզված ասաց Լեշեկը։

«Հունիսի 15-ից այգին պետք է փակվի։ Այգու տեղում մեծ ռեստորան է կառուցվելու։
Ստորագրություն՝ Քաղաքի Պրեզիդենտ»։

Իսկ իմ երեխաները պիտի ամբողջ ամառը թրև գան մեր նեղլիկ և կեղտոտ բակո՞ւմ, — զոռում էր մի կին։ — Սա ի՞նչ որոշում է, ինչո՞ւ են նեղացնում երեխաներին։

— Հիմա որտե՞ղ պետք է խաղան մեր երեխաները, — վրդովված խոսեց մի տղամարդ։ — Իմ երեխան ամբողջ օրն այստեղ պահմտոցի էր խաղում։ Հիմա, ասացեք խնդրեմ, հնարավո՞ր է տանը կարգին պահմտոցի խաղալ։

Ի՞նչ եք ասում։ Իհարկե, անհնար է, — վրա տվին չորս կողմից։

Պետք է գնալ քաղաքի Պրեզիդենտի մոտ և պատմել այս բոլորի մասին, — ձայն տվին ամեն կողմից։

Այո՛, բայց մեզ ներս կթողնե՞ն, — հարցրեց մի նիհար ակնոցավոր քաղաքացի։ — Ես լսել եմ, որ Պրեզիդենտի մոտ ընկնելը հեշտ բան չէ։

— Նրա մոտ ընկնելու համար հարկավոր է անցնել հարյուր տասնյոթ սենյակի միջով, որոնց պատերից յուրաքանչյուր երեխան գրկած մի հսկայական կին։ Իմ հորաքույրն է պատմել, այդ սենյակներից մի քանիսը նա է հավարում, կարգի բերում։ Իսկ ամեն մի սենյակում ամենապակասը մեկ երբեմն էլ երեք պաշտոնյա է նստած։ Նրանք հերթով հարցուփորձ են անում, թե ինչ գործով եք Պրեզիդենտի մոտ գնում։ Կամ նույնիսկ պահանջում են այդ բոլորը գրել թղթի վրա։

— Ըստ որում պետք է շատ մաքուր և անսխալ գրել, թե չէ չեն ընդունի, — ավելացրեց ակնոցավոր նիհար քաղաքացին։

— Դե լավ, — մեջ ընկավ Պետրիկը, — ասենք թե որևէ մեկը ուղղագրական բառարանի օգնությամբ մի կերպ հաջողեցնում է անսխալ գրել։ Դրանից հետո ինչ են անում։

— Ինչպե՞ս թե «ի՞նչ են անում», — զայրացած հարցրեց ինչ-որ մեկը։

— Դե, ի՞նչ են անում դիմումը։

Պրեզիդենտը կարդում է։

— Ա՜յդ էր պակաս։ Պրեզիդենտը էլ բան ու գործ չունի, քո դիմումին է սպասում։ Իսկ ինչի համար են քարտուղարը կամ քարտուղարուհին։ Դրանք էլ հո մեկ կամ երկուսը չե՞ն։ Զանազան խորհրդատուներ էլ կան։ Եվ հետո, մեկ էլ տեսար, Պրեզիդենտը նստած է խորհրդակցության և շունչ քաշելու ժամանակ չունի։

Այո՛, այո՛, — բոլորը տխուր տարուբերում էին գլուխները։ — Ի՞նչ կարելի է անել հիմա, պետք է մի կերպ փրկել այգին։

Վերջում բոլորն այնպես էին տխրել, որ մայրիկներն սկսեցին լուռ արտասվել, իսկ աղջիկները նույնիսկ լացուկոծ բարձրացրին։ Ճոնիկի հետ կանգնած ծերուկը գլուխը շուռ տվեց՝ իբրև թե



հագում է, իսկ ակնոցավոր նիհար մարդը գրպանից հանեց թաշկինակը և սկսեց փնթփնթալ. Թե փոշի է ընկել աչքը։ Տղաները մի կերպ զսպում էին իրենց, բայց նրանց համար էլ շատ ծանր էր։

Վերջապես, ինչ-որ մեկի մայրիկը ասաց.

Մի քիչ էլ խաղացեք, սիրելի՛ երեխաներ։ Մի օր է մնացել ձեզ խաղալու։ Լսվեց մոտակա աշտարակի ժամացույցի ձայնը։

Ժամը քանի՞սն է,— հարցրեց մեկը։

— Ես տասը հարված հաշվեցի,— ասաց երեխայի գրկած մայրիկը.— ուրեմն տասն է։

— Տա՞սը,— կրկնեցին Կարոլինկան ու Պետրիկը։— Ուրեմն արդեն տասն է։

## ԿԱՐՄԻՐ ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆ ԵՐԵՎՈՒՄ Է ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ

Պետրիկը բռնեց Կարոլինկայի ձեռքը և շշնջաց.

Մենք պետք է խելք-խելքի տանք ու մի բան անենք։ Հասկանու՞մ ես, մենք միակ մարդիկ, ես ուզում էի ասել երեխաներն ենք, որ կարող ենք այս գործը գլուխ բերել։ Բայց եթե դու ուզում ես քեզ համար որևէ մանկական խաղալիք խնդրել... ցավով ասաց Պետրիկը։

— Ի՞նչ ես ասում, Պետրի՛կ,— նեղացավ Կարոլինկան։ Ինձ համար ոչինչ չեմ ուզում։ Ես գիտեմ, որ հիմա ամենակարևորը այգին է, չէ՞ որ այն բոլոր երեխաների համար է։ Եթե դրանից հետո հուլունքը ամբողջովին գունաթափված չլինի՝ նոր միայն կխնդրեմ իմ ուզածը։

— Լավ։ Մենք կգնանք քաղաքի Պրեզիդենտի մոտ, ամեն ինչ կբացատրենք և կպահանջենք, որ իրենց այդ ոստիկանի համար մի ուրիշ տեղ գտնեն։

— Գնանք, հենց հիմա,— համաձայնեց Կարոլինկան։

Պարզ է, որ այս անգամ չուզենալով հուլունքի ուժը թուլացնել, նրանք գնացին ամենասովորական ձևով՝ ավտոբուսով։ Քաղաքապետարանը գտնվում էր Հին շուկայի կողքին։ Հսկայական դարպասի մոտ, պահակակետում կանգնած էր ոստիկանի հինավուրց համազգեստ հագած ժամապահը և խստորեն չորս կողմն էր նայում։

— Ես շատ եմ վախենում նրանից,— խոստովանեց Կարոլինկան,— ինչ ուզում է լինի, ես նրա կողքով չեմ անցնի։ Մի տե՛ս, ի՞նչ չարն է։

— Իսկ ես կանցնեմ, ես բոլորովին չեմ վախենում։

— Պարծենկոտն ես հա՛։ Դու էլ կվախենաս։

Ե՞ս եմ պարծենկոտը,— փրփրեց Պետրիկը,— դե հիմա կտեսնես — ու Պետրիկը վստահ ու համարձակ առաջ գնաց։

Բայց ժամապահն խուլ ձայն տվեց

— Է՜յ, պստլի՛կ, ա՛յդ ո՞ւր։ Ծուռ չմտի՛ր աչքիս, քանի դեռ չեմ բարկացել։

— Ես գնում եմ պարոն Պրեզիդենտի մոտ, շատ կարևոր գործով,— հայտարարեց Պետրիկը և ավելի քաղաքավարի ու պատկառելի երևալու համար գլուխը վեր ցցեց։

Այդ բանը ժամապահի վրա ոչ մի ազդեցություն չգործեց։ Նա անհոգորեն շարժեց հաստ բեղերը և հրապարակով մեկ բղավեց.

— Հապա մի փասափուսեդ հավաքի՛ր, քանի դեռ կենդանի ես, փոքրատի մեկը։ Սրա՞ն տեսեք, քաղաքի Պրեզիդենտի հետ գործ ունի։

— Այո՛, գործ ունեմ,— ոտքը գետնովը տվեց Պետրիկը։ Ավելի վստահ լինելու համար նա մի փոքր հեռու էր կանգնել ժամապահից, բայց էլի տեղի չէր տալիս։

— Եթե դուք հենց հիմա չգնաք այստեղից, ես կհրամայեմ ձեզ բանտ նետել,— ի պատասխան որոտաց պահակը։

Այո՛, միանգամայն պարզ էր, որ պահակը նրանց ներս թողնողը չէր, էլ ուր մնաց, որ հարյուր տասնյակ պաշտոնյաները թողնեին։ Դեռ



digitised by A.R.A.R.@

դիմում գրելն էլ՝ իր հերթին։ Իհարկե, պետք է դիմել հուլունքի օգնությանը։

Եվ մի քանի րոպե հետո նրանք անտեսանելի դարձած՝ անցնում էին պահակի կողքով։ Նրանք անցան հսկայական բակի միջով, ուր կողք-կողքի հիանալի մեքենաներ էին կանգնած։

— Տեսնես ո՞ւմ մեքենաներն են, — հարցրեց Կարոլինկան։

— Երևի Պրեզիդենտինն են։

— Այդքա՜ն շա՞տ։

— Դե, երևի, օրվա տարբեր ժամերին տարբեր մեքենա է նստում, — փորձում էր գլուխ հանել Պետրիկը — կամ գուցե նրա մոտ հյուրեր են եկել։ Կարևոր հյուրեր, ուրիշ քաղաքներից։ Բայց լավ ավտոմեքենաներ են։ Կանգնի՛ր, մի քիչ նայենք։ Ես հիմա քեզ կասեմ, թե ինչ մարկայի մեքենաներ են։

Բոլորից շատ նրանց դուր եկավ կարմիր և սև գույնի մեծ ավտոմեքենան։

— Գիտե՞ս, Կարոլի՛նկա, այս մեքենան վարելը շատ հեշտ է։ Սպասի՛ր հիմա կփորձենք, նստի՛ր։

Ավտոմեքենայի մեջ մարդ չկար, իսկ գայթակղությունը շատ էր մեծ։ Դռները չրխկացին, և Կարոլինկան արդեն նստած էր կաշվե կարմիր բարձերի վրա, իսկ Պետրիկը կարմիր ոսկեզօծ ղեկի մոտ ինչ-որ բաներ էր քզքզում։

Հանկարծ մեքենան տեղից պոկվեց և մոտորը սկսեց սպառնագին աղմկել։ Բարեբախտաբար Պետրիկն արագ մի կողմ թեքեց ղեկը, թե չէ քիչ էր մնում մեքենան դիպչեր պատին։

— Ա՜խ, ա՜խ, — ճչաց վախեցած Կարոլինկան։

— Ոչի՜նչ, մի՛ վախեցիր, — հանգստացնում էր նրան Պետրիկը։ — Ես այս գործից մի քիչ հասկանում եմ։ Վախենալու բան չկա։ — Բայց ճիշտն ասած, Պետրիկը ինքն էլ էր շատ վախենում և չգիտեր ինչ անել։

— Ես արդեն ուզում եմ իջնել, — ասաց Կարոլինկան, — ազնիվ խոսք, լավ կլինի, որ ես իջնեմ։

— Սպասի՛ր, սպասի՛ր, մի տեսնեմ ինչպես են կանգնեցնում։ Սատանայական մեքենա է։ Չեմ հասկանում, թե ինչ է կատարվում մոտորի հետ։

Մինչ այդ, դուրս վազեց կարմիր մեքենայի վարորդը, սարսափելի զայրացած։

— Այդ ո՞վ է համարձակվել ձեռք տալ պան Պրեզիդենտի մեքենային, — բղավեց նա, բայց զարմանքից քարացած, իսկույն պապանձվեց։ Կարմիր ավտոմեքենան դատարկ էր։ Միանգամայն դատարկ։ Մոտորը մռնչում էր, իսկ մեքենան՝ տարօրինակ ձևով դես ու դեն էր թռչում։ Վարորդը տրորեց աչքերը և նորից նայեց։ Ոչ, տեսողությունը չէր խաբում. ավտոմեքենայի մեջ ոչ ոք չկար։

— Այս ի՞նչ է, — կմկմաց նա։

— Դուք, լավ կլինի ասեք՝ ինչպես կանգնեցնեմ մեքենան, — հանկարծ չգիտես որտեղից հարցրեց ինչ-որ մեկի ձայնը։

Ձայնը փոքր երեխայի ձայնի էր նման, բայց վարորդը ժամանակ չուներ այդ մասին մտածելու և արագ պատասխանեց.

— Տեր աստված, հարկավոր է մոտորն անջատել։

— Որտեղի՞ց է անջատվում, բանալիի մոտի՞ց,— նորից հարցրեց ձայնը։

— Դե, իհարկե, բանալիի մոտից։ Տե՜ր աստված· երազի մեջ եմ, ի՞նչ է։ Այս ո՞ւմ հետ եմ խոսում։



Խե՜ղճ վարորդ. նա բոլորովին կորցրել էր իրեն։

Հանկարծ մեքենան կանգ առավ։ Դռները բացվեցին և նորից չրխկալով փակվեցին։ Անտեսանելի Պետրիկը և Կարոլինկան արագ դուրս թռան մեքենայից։

(Շարունակելի)



digitised by A.R.A.R.@

*Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ*

*ՕՎՍԵՅ ԴՐԻԶ*

(Հրեա բանաստեղծ)

## ԶԱՆԳԱԿԸ

Եզան վզին մի հատ զանգ
Զնգզնգում է՝ ծինգ–ծլանգ,
Ոչինչ չկա անսովոր,
Բայց զնգում է ամեն օր։
Ոչ ոք գուցե չհիշեր,
Թե այդպիսի մի զանգ կար,
Եթե մինչև ուշ գիշեր
Նա իր լեզվին զոռ չտար։

«Դի-լի, դի-լի, դի-լի-րին,
Դի-լի, դի-լի, դի-լի-դոն,
Զայնս անուշ, ցնծագին,
Որտեղ ես եմ, այնտեղ՝ տոն»։

Զնգզնգում է նա այսպես.
Նա դրանում շատ վարժ է,
Բայց ասացեք վերջապես,
Դատարկ զնգոցն ի՞նչ արժե։

Զանգակն առանց այդ եզան՝
Մի գրոշ է, ոչ ավել,
Եվ էլ ո՞ւմ է պետք այսքան
Աշխարհով մեկ բղավել։

## ԺՈՒԺԿԱՆ

Ժուչկան գիտե մուտքի մոտ
Հանգիստ ուտել ու պառկել,
Մարդկանց ծանոթ-անծանոթ
Տուն է թողնում անարգել։

Բայց հաչում է նա այսօր
Մի արտակարգ եռանդով,
Գուցե մեկը գողեգող
Տո՞ւնն է մտել մեր անդորր։

Բայց թե օրը ցերեկով
Գողն ի՞նչ ունի մեր տան մեջ,
Հաչում է նա սեփական
Շուքի վրա իր անվերջ։

## ՇՇՈՒԿԸ

Շշուկը շշուկին
Շշնջաց.
— Քնե՞լ ես,
Իսկ ես, փեսնո՞ւմ ես,
Չեմ քնած։
Գիտե՞ս ինչ,
Ես տեսա՝
Երկնքից ո՛ւր ընկավ
Աստղը ջինջ։
Եկ փնտրե՛նք նրան։
— Անպայմա՛ն։—
Շշուկը շշուկին շշնջաց։
Մեկ-երկու անգամ հորանջեց
Ու ... ննջեց։

*Թարգմ. ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

digitised by A.R.A.R.@

# ՄԵՐ ՋՈԿԱՏԱՎԱՐԸ

Ընկերները՝ Ռաֆիկն ու Սաշան Մաթևոսին շատ էին պատմել դպրոցի մասին, պատմել էին իրենց ջոկատների աշխատանքի մասին։

— Լավ կլինի, եթե դու էլ գաս դպրոց,— հաճախ էր նրան դիմում Ռաֆիկը։

— Ինչ անեմ, դու գիտես, որ ժամանակ չունեմ,— պատասխանում էր Մաթևոսը, որը Երևանի ավտոպահեստամասերի գործարանում արտադրության առաջավոր է։ Շատերն են տեսել, թե ինչպես աշխատանքից հետո Մաթևոսը իր ընկերների հետ հաճախ փակվում է մի սենյակում, զրուցում է, նյութեր կարդում, պատրաստում է գործարանի գրական թերթի հերթական համարը։ Իսկ երեկոները, դեռ չհանգստացած, նա շտապում է համալսարան։ Այս տարի նա ավելի շատ է պարապում, պատրաստվում է պետական քննություններին։ Իսկ ինչքա՜ն գործեր կան տանը։ Էլ որտեղի՞ց ժամանակ գտներ Մաթևոսը, որ գնար դպրոց, աշխատեր երեխաների հետ։

Բայց մի օր էլ այնպես պատահեց, որ Մաթևոսը ընկերների հետ գնաց դպրոց։

## ԱՐՄԵՆԱԿԸ ՎԵՐԱԴԱՐՁԱՎ ՋՈԿԱՏ

Երբ Մաթևոսը ընկերների հետ մտավ պիոներական սենյակ, երեք-չորս տղաներ և աղջիկներ հուզված խոսում էին ավագ ջոկատավարի հետ։

— Ի՞նչ անենք, ընկեր Լյուսյա, արդեն տասնութ օր է, նա դասի չի գալիս։

— Իրենց բակի տղաներն ասում են, որ առողջացել է, էլ հիվանդ չի։

— Առանց այդ էլ վատ է սովորում, հիմա էլ բացակայում է։

Լուռ լսում էր Մաթևոսը և ուրախանում. «Ինչ լավ է, որ այսպես մտահոգվում են ընկերոջ համար»։

Եվ նա որոշեց օգնել երեխաներին։ Խոսեց Պավլիկ Մորոզովի անվան ջոկատի պիոներների հետ, հետաքրքրվեց ուսուցիչներից, հարցրեց դասղեկին և իմացավ, որ Արմենակը երկտարեցի է, վատառողջ, հաճախ է բացակայում դասերից։ Ու մի օր էլ Մաթևոսն ու 6-րդ «ե» դասարանի դասղեկը թակեցին Արմենակենց տան դուռը։ Նրանց դիմավորեց մայրը.

— Համեցեք, ինչ լավ է, որ եկաք,— և սիրալիր ներս հրավիրեց։

Արմենակը, երևի դժգոհ, գլխիկոր կանգնել էր սենյակի անկյունում։

—Արմենակ, լավ է, որ առողջացել ես,— մեղմ սկսեց Մաթևոսը,— կարող ես արդեն դպրոց գալ։

Բայց Արմենակը լռում էր։ Հետո մայրը պատմեց, որ ըսկզբում, ճիշտ է, հիվանդ էր, ջերմություն ուներ, բայց հետո չուզեց գնալ դպրոց, երեկոներն էլ սկսել է հաճախել բռնցքամարտի պարապմունքների։

Ամբողջ ժամանակ Մաթևոսը լուռ, գլուխն առել ափերի մեջ, մտածում էր։

Երբ դուրս էին գալիս, Մաթևոսը դիմեց Արմենակին.

— Գուցե դու ինձ կուղեկցե՞ս։

Չէր սպասում Արմենակը։ Թեև դժգոհ, բայց համաձայնվեց։ Նրանք դուրս եկան փողոց։ Դրսում տաք էր ու հաճելի։ Քայլում էին նրանք, երկուսն էլ մտազբաղ։

— Արմենակ, ինչո՞ւ չես ուզում դպրոց գալ,— սկսեց Մաթևոսը։

— Չեմ ուզում, որովհետև բռնցքամարտիկ եմ ուզում դառնալ,— մի պահ լռելուց հետո ուզեց արդարանալ Արմենակը։

— Շատ լավ է, որ դու սիրում ես սպորտը։ Բայց մի՞թե սովորելը կխանգարի քեզ։

— Չի խանգարի, բայց գիտեք... ես չեմ կարող սովորել, երկտարեցի եմ... դժվարանում եմ, չեմ հասցնում։ Իսկ ի՞նչ



վատ է որ բռնցքամարտիկը... այ, իմ մարզիչը...

— Իսկ դու կարծում ես, թե նա չի՞ սովորել. սովորել է և այն էլ՝ շատ։ Արմենակ, դու բռնցքամարտի պարապմունքներին երեկոներն ես գնում, չէ՞։ Իսկ ցերե՞կը...

Մեղմ զրուցում էին ջոկատավարն ու Արմենակը։ Մեկը պատմում էր իր առօրյայից, խորհուրդներ տալիս, համոզում, իսկ մյուսը լսում էր, մտածում, ինքն իր հետ խոսում. «Գուցե ճիշտ է ասում, ինչո՞ւ չեմ կարող»։

Արդեն մթնշաղ էր, երբ Արմենակը ժպտալով հրաժեշտ տվեց ընկեր Մաթևոսին։

## ԻՍԿԱԿԱՆ ԸՆԿԵՐԸ ՉԻ ԽՌՈՎԻ

Անցնում էին օրերը։ Ջոկատը շատ էր սիրում ընկեր Մաթևոսին, անհամբեր սպասում էր նրան։ Իսկ Մաթևոսը, այնպե՜ս էր կապվել պիոներների հետ. ամեն օր լինում էր դպրոցում, զրուցում երեխաների հետ, լսում նրանց։

Այդ օրն էլ դասերից հետո ընկեր Մաթևոսը ջոկատի հետ մնացել էր դպրոցում։ Պատրաստում էին պատի թերթի հերթական համարը։ Ջոկատավարը կարդում, ստուգում էր նյութերը, երբ Արմենակը անհամարձակ մոտեցավ նրան.

— Ընկեր Մաթևոս, սա էլ



digitised by A.R.A.R.@



# ԸՆԿԵՐ ՀԱՅԿԸ



*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ուղարկեցին գործարանից
Մեզ մոտ մի նոր ջոկատավար։
Ահա՛ թե ինչ մտածեցինք՝
Այս տարի մեր գործն է դժվար։

Երևում է, մի հասարակ
Ու շարքային բանվոր է նա.
Պարզ է, որ մեր դպրոցական
Գործից ոչինչ չի հասկանա...

Ճիշտ չէր, սակայն, կարծիքը մեր։
Դու մի ասի՝ ընկեր Հայկը
Գերազանց է միշտ սովորել
Եվ ավարտել միջնակարգը։

Եվ, ասում են, հիմա էլ դեռ
Սովորում է, հեռակայում.
Դառնալու է նա ինժեներ
Շուտով իրենց ֆաբրիկայում։

Զարմանք բան է... էլ ի՞նչ ասես,
Որ չի գալիս նրա ձեռքից.



Նկ. ՎԼԱԴԻՄԻՐ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Ու դեռ ինչքա՜ն բաներ պիտի
Սովորենք մենք ընկեր Հայկից։

Մերթ նկարիչ է մեզ համար,
Մերթ՝ երաժիշտ ու ռեժիսյոր,
Մերթ՝ հոգատար ավագ եղբայր,
Մերթ՝ ուսուցիչ ու դատավոր։

Լսում է նա ուշի-ուշով
Ցանկությունը ամեն մեկի,
Գործի անցնում նոր աշխույժով,
Կյանք տալիս մեր երազանքին։

Նրա օրով ջոկատը մեր
Մրցություններ շահեց քանի։
Կնվաճենք շուտով նաև
Փոխանցիկը մեր շրջանի...

Գոհ ենք անչափ ընկեր Հայկից
Եվ ասում ենք հիմա իրար՝
Հե՜շտ է նրա հետ ամեն ինչ,
Առանց նրան շա՜տ է դժվար։

---

ես եմ գրել,— ասաց ու նրան մեկնեց մի թերթ։

— Լավ է, անպայման կտպագրենք,— վերջացնելուց հետո ժպտաց ընկեր Մաթևոսը, ապա շարունակեց.— Իսկ դու, Թամարա, գրեցի՞ր։

— Ա՜խր, դժվար է, գիտե՞ք։ Ինչպե՞ս գրեմ. չէ՞ որ նա իմ ընկերն է, կնեղանա,— դժգոհեց Թամարան։

— Չի՛ խոսի՞։ Իսկ եթե դու ճիշտ ես գրո՞ւմ։ Երբ ընկերդ սխալ է կատարում, դու պետք է օգնես, զգուշացնես նրան ժամանակին, որ չկրկնի սխալը։ Եթե դու արդարացի ես, չեն նեղանա,— համոզում էր Թամարային ընկեր Մաթևոսը։

Ու այսպես, թերթը պատրաստ էր։ Հետո ընկեր Մաթևոսը առաջարկեց ծնողների համար կազմակերպել համերգ-հավաքույթ։

## ԾԱՓԱՀԱՐՈՒՄ ԵՆ ԾՆՈՂՆԵՐԸ

Բոլորն ուրախ էին։ Դասերից հետո 6-րդ «ե» դասարանը հավաքվել էր պիոներական սենյակում և սպասում էր ընկեր Մաթևոսին։

— Ուզում եք սկսենք մինչև ընկեր Մաթևոսը գա,— առաջարկեց ավագ ջոկատավար ընկեր Լյուսյան։

— Ոչ, նրանք հիմա կգան, երևի մեքենան է ուշացել,— տեղերից առարկեցին մի քանիսը։

Քիչ անց, ներս մտան ընկեր Մաթևոսը, Արմենակն ու մի քանի տղաներ։

— Վերջացրինք, կատարեցինք մեր խոստումը, 10 տոննա մետաղի ջարդոն հանձնեցինք,— ուրախ-ուրախ պատմում էին տղաները։

— Մեքենան ուշացավ, ուշ տեղափոխեցինք։ Ոչինչ, հիմա արդեն կարող ենք սկսել,— ասաց ընկեր Մաթևոսը, և վերջին անգամ փորձեցին պիոներների ելույթները։

Իսկ երեկոյան... Դահլիճը ողողվել էր կարմիր, կանաչ, դեղին լույսերով, բեմը զարդարել էին իրենց պատրաստած թղթե ծաղիկներով։ Հավաքվել էին ուսուցիչները, եկել էին ծնողներ։

Մրահոն մի աղջիկ, ջոկատի խորհրդի նախագահը, կարճ պատմեց երեկոյի մասին։ Նրանից հետո հերթով ելույթ ունեցան նաև մյուսները, երգում էին ու պարում, արտասանում և զվարճալի խաղեր կազմակերպում։ Գոհ էին ուսուցիչները, ուրախ ծափահարում էին ծնողները։

Այսպես հետաքրքիր ու բովանդակալից է անցնում Թումանյանի անվան դպրոցի Պավլիկ Մորոզովի անվան ջոկատի առօրյան։ Իսկ նրանց ամենամոտ բարեկամը՝ արտադրությունից եկած ջոկատավարը, ամեն ինչ անում է, որ առօրյան ավելի բովանդակալից լինի։

Շուտով գարունը կբացվի և ջոկատի բոլոր պիոներները ընկեր Մաթևոսի հետ դուրս կգան դպրոցի շրջապատը կանաչապատելու և ծառեր տնկելու։

Անկեղծ, ջերմ բնավորությամբ մի մարդ է Մաթևոս Մաթևոսյանը։ Նրան սիրում և հարգում են ուսուցիչները, ավագ ջոկատավարները, իսկ ամենից շատ՝ երեխաները։

**ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ**



digitised by A.R.A.R.@

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՐԹ

Ես վաղուց էի լսել Երևանի 130-րդ դպրոցի ,,բազմագույն վզկապների,, ակումբի մասին: Ու մի օր էլ որոշեցի գնալ դըպրոց:

--Գիտե՞ս, մեր ակումբի աշխատանքները այնքան շա՜տ են... ոգևորված սկսեց Հովիկը,--Մենք բազմաթիվ նամակներ ենք ստանում Հունգարիայից, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայից, Կուբայից, Կիպրոսից, Իտալիայից, ինչպես նաև Միության բոլոր հանրապետություններից. էլ չեմ խոսում, թե ինչքան նամակներ են գրում Հայաստանի տարբեր շրջաններից: Առանձնապես հուզիչ նամակներ են գրում սփյուռքի մեր քույրերն ու եղբայրները: Նրանք այնպե՜ս կարոտով են խոսում Երևանի մասին, ուզում են գալ հայրենիք՝ սովորել ու խաղալ մեզ հետ: Հունվարի կեսերին մենք նրանց ուղարկեցինք երկրորդ ծանրոցը:

— Հետաքրքիր է, իսկ ի՞նչ ուղարկեցիք,— հարցրեցի ես:

— Տետրեր, մատիտներ, գրիչներ, Հայաստանի տեսարժան վայրերը պատկերող նկարներ, վզկապներ, հայկական կոնֆետներ, ,,Պիոներ կանչ,, թերթի, ,,Պիոներ,, ամսագրի համարներից, Սայաթ-Նովայի, Կոմիտասի երգերի ձայնապնակները, հայկական տարազով տիկնիկներ...

--Սպասի՛ր, սպասի՛ր, իսկ որտեղի՞ց գնեցիք այդ տիկնիկները, չէ՞ որ մեր խանութներում նման տիկնիկներ չեն վաճառում,-- զարմացա ես:

— Իհարկե, չեն վաճառում, այդ տիկնիկները պատրաստեց 8-րդ դասարանցի Անահիտ Բադալյանը: Հագուստները ինքն էլ ձևեց ու կարեց:

— Իսկ դուք միայն նամակնե՞ր եք գրում ու ծանրոցնե՞ր ուղարկում,— դարձյալ հետաքրքրվեցի ես:

— Ո՜չ, ո՜չ: Դրուժինայում և ջոկատներում կազմակերպում ենք հետաքրքիր զրույցներ և հավաքույթներ՝ նվիրված տարբեր երկրների ժողովուրդների կենցաղին և սովորություններին, կարդում ենք նրանց մասին հետաքրքիր պատմվածքներ ու հեքիաթներ: Հա՜, մոռացա ասել, որ Պրագայի պիոներները մեր 6-րդ դասարանցիներին չեխական տիկնիկներ են ուղարկել: Ամռանը որոշել ենք էքսկուրսիա գնալ Կիևի պիոներների մոտ: Նրանց հետ մենք արդեն վաղուց ենք բարեկամացել, շատերին էլ գիտենք նկարներով: Եվ, գիտե՞ս ինչ, այդ բոլոր աշխատանքները ղեկավարում է մեր ջոկատավար ընկեր Իզաբելլան: Վերջերս էլ Երևանի Սփյուռքի կոմիտեից եկան մեզ մոտ, ակումբի բոլոր անդամներին նկարեցին, ասում էին՝ պետք է տպագրեն արտասահմանում լույս տեսնող «Վահագն» թերթում:



**Գրում է Պիասերը**

Իհարկե, էլի շատ ուրիշ աշխատանքների մասին կպատմեր Հովիկը, եթե ես չշտապեի: Ինչ լավ կլինի, եթե բոլոր դպրոցներում ստեղծվեն բարեկամության ակումբներ:



ՎԱՐԴԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

*Պիոներական ճամբարի հանդիսավոր երեկոներից մեկում, խարույկի շուրջը հավաքված, պիոներները լսում էին հին բոլշևիկ Աղասի Վարդանյանին: Նրանց հետաքրքրում էր՝ երեխաներ մասնակցե՞լ են արդյոք Մայիսյան ապստամբությանը: Եվ ահա հին բոլշևիկ Վարդանյանը սկսեց պատմել պիոներներին, թե ինչ հսկայական դեր խաղացին երեխաները Մայիսյան ապստամբության օրերին:*

*— Սիրելի երեխաներ, հիմա ես ձեզ կպատմեմ 1920 թվականի մայիսին Սարիղամիշ քաղաքում տեղի ունեցած մի դեպքի մասին:*

*Այդ օրերին բոլշևիկյան ռևոլյուցիոն կազմակերպությունները զինված ապստամբություն էին պատրաստում դաշնակների դեմ:*

*Իմ հիշողության մեջ հավիտյան կմնան երեք պատանիների անունները, Մայիսյան ապստամբության ամենակրտսեր մասնակիցների անունները: Դրանք էին՝ Աշոտը, Արամը և Վարդանը:*

*Այդ ժամանակ Վարդանի հայրը ծառայում էր 4-րդ հայկական գնդում, որպես խոհարար: Հայրը հաճախ էր խորհում ու մտահոգվում իր 12 տարեկան Վարդանի ապագայի մասին: Գնդում ըն-*



digitised by A.R.A.R.@

կերները խորհուրդ էին տալիս երեխային տեղավորել հայկական 4-րդ գնդի երաժշտական մասում, որը տեղավորված էր Սարիղամիշում՝ կաթի գործարանի մոտ։

Սարիղամիշ քաղաքը փոքր քաղաք է. շրջապատված սոճու անտառներով և հարուստ է հանքային ջրերով։

Հայրը հետևելով իր ընկերների խորհրդին, մի օր տղայի հետ միասին կանգնեց գնդի հրամանատարի առաջ, որին կոչում էին գնդապետ Միրիմանով։

— Պարո՛ն գնդապետ, — դիմեց նրան Վարդանի հայրը, — ամբողջ ընտանիքս՝ կինս, երեք երեխաներս սովամահ եղան, մնաց միայն այս տղան, որ կանգնած է ձեր առջև։ Շատ եմ խնդրում, տեղավորեցե՛ք նրան գնդի երաժշտական մասում։

— Ինչ արած, հաշվի առնելով վիճակդ, կտեղավորենք երեխային, բայց ոչ երաժշտական մասում, նայի՛ր, որքա՜ն վտիտ է, նա չի կարող փողային գործիքի վրա նվագել։ Եկ, ավելի լավ է, տեղավորենք նրան գնդի զինային արհեստանոցում, այնտեղ նա զինային գործի վարպետ կդառնա։

Եվ այդպես, Վարդանը որպես աշակերտ տեղավորվեց գնդի զինային արհեստանոցում։

Այդ ժամանակ Հայաստանում իշխում էին դաշնակները, որոնք երկիրը հասցրել էին սովի և աղքատության։ Շուրջը թագավորում էր մահը և հայ ժողովուրդը կանգնած էր ֆիզիկական բնաջնջման եզրին։

Վարդանին տվեցին զինվորական հագուստ՝ մի զույգ զինվորական հսկայական սապոգներ, շալվար և բլուզ. այդ հագուստը, իհարկե, մեծի համար էր կարված, և Վարդանն, ասես, լող էր տալիս համազգեստի մեջ։ Բացի զինվորական [illegible]տահագուստից, Վարդանին տվին կաթսայիկ և ալյումինե գդալ։

Արհեստանոցում էլ Վարդանն առաջին անգամ ծանոթացավ Արամին ու Աշոտին, և նրանք մտերմացան։ Տղաները Վարդանին պատմեցին արհեստանոցի պետի՝ Տիգրանի մասին, որը մի չար ու դաժան մարդ էր։

Տիգրանը միջին տարիքի մարդ էր, ցածրահասակ, և չար դեմքով։ Նա կատաղի դաշնակ էր և բոլոր ուժով ձգտում էր արհեստանոցի բանվորներին ենթարկել դաշնակցական ռեժիմին։ Նա պահանջում էր, որ արհեստանոցում իր երևալուն պես բոլորը ոտքի կանգնեն և ողջունեն իրեն հետևյալ խոսքերով. «Առողջություն, պարոն Տիգրան», իսկ անձնական հանդիպումների ժամանակ նա պահանջում էր իրեն կոչել ոչ այլ կերպ, քան «Ձերդ պայծառափայլություն»։ Եթե որևէ մեկը ծառայողներից չէր ենթարկվում նրա այդ կանոնին, ապա նա խստորեն պատժում էր ըմբոստին։

Արհեստանոցի պետի ճիշտ հակառակն էր վարպետ Սուրենը, որի մոտ Վարդանը աշակերտ էր նշանակված։ Արհեստանոցի բոլոր ծառայողները, հատկապես դեռահաս աշակերտները, ասում էին, որ վարպետ Սուրենը շատ բարեհոգի, զգայուն մարդ է։

Վարպետ Սուրենի հետ առաջին ծանոթությունը Վարդանի հոգում թողեց անջնջելի տպավորություն։ Հին վարպետը ջերմ դիմավորեց տղային, հարցուփորձ անելով ամեն ինչի մասին և իմանալով նրա անունը՝ կատակով նրան անվանեց «Վարդան Մամիկոնյան»։ Այսպես, հաստատվեց հին բանվորի և պատանի աշակերտի բարեկամությունը։

Արհեստանոցում աշխատանքը շատ ծանր էր։ Արհեստին տիրապետելուց բացի, աշակերտները պարտավոր էին մաքրել արհեստանոցը, ջուր կրել, վարպետներին գործիքներ տալ, մաքրել զենքերն ու գործիքները։

Մի անգամ աշխատանքից հետո արհեստանոց եկավ Տիգրանը։ Այդ ժամանակ արհեստանոցում





digitised by A.R.A.R.@



էր գտնվում Վարդանը, որը հերթապահ էր և հավաքում, մաքրում էր արհեստանոցը։

Պետին տեսնելով, պատանին ձգվեց լարի պես և, փոխանակ ասելու «Առողջություն պարոն Տիգրան», ասաց՝ «Առողջություն, չարոն Տիգրան»։

Լսելով այդ, կատաղած պետը կարմրեց խեցգետնի պես և տղային այնպիսի ապտակ հասցրեց, որ վերջինս ուշաթափ ընկավ։ Բայց նա այդ քիչ համարեց և հրամայեց պատժել Վարդանին։ Ստիպեց, որ տղան ծանր հրացանը ձեռքին, ցուրտ ու անձրևոտ եղանակին, առանց ուտելու հերթապահ կանգնի։

Առաջին ժամերն անցան աննկատելի, բայց գնալով Վարդանի վիճակը ծանրացավ. հոգնածությունը, սովը, ծարավը, ցուրտը սկսեցին տանջել երեխային, և նա չկարողանալով այլևս ուսին պահել ծանր հրացանը՝ կորցրեց հավասարակշռությունը։ Իսկ պարոն Տիգրանն ամբողջ ժամանակ հետևում էր, որ ոչ ոք չմոտենա խեղճ տղային։ Տեսնելով, որ Վարդանը շատ է հոգնել և այլևս չի դիմանում, նրա ընկերները՝ Աշոտը և Արամը վազեցին վարպետ Սուրենի մոտ, խնդրելով, որ միջամտի՝ Վարդանին ազատելու համար։ Բայց հին վարպետը, գլուխն օրորելով, ասաց տղաներին.

— Է՜հ, տղանե՛ր, դուք չգիտեք, թե ինչ անասուն է այդ պարոն Տիգրանը։ Վարդանը ճիշտ էր, որ նրան «պարոն»-ի փոխարեն «չարոն» անվանեց։ Այդ դաշնակը հոգի ու սիրտ չունի։ Իսկ կարելի՞ է մարդու սիրտը շարժել, երբ նա սիրտ չունի։ Այդ Տիգրանը մարդ չէ, այլ իսկական օձ։

Բայց այնուամենայնիվ վարպետ Սուրենը գնաց Տիգրանի մոտ, իսկ տղաներն անհամբեր սպասում էին նրա վերադարձին։ Վերջապես վարպետ Սուրենը վերադարձավ և տղաները նրան նայելով՝ զգացին, որ ոչինչ չի ստացվել։

Վարդանն, ինչ խոսք, չդիմացավ այդ վիճակին և շուտով տապալվեց գետին։ Նրան տեղափոխեցին հիվանդանոց, իսկ երբ նա վերադարձավ, տղաներն ավելի մտերմացան նրա հետ։

1920 թվականի մայիսյան օրերին Ղարսում, Սարիղամիշում և ամբողջ Հայաստանում ավելի ու ավելի ուժգին էին տարածվում Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի լուրերը։ Սարիղամիշում պատրաստվում էին մայիսյան տոներին և Մայիսյան ապստամբությանը։ Նախապատրաստվում էր այդ օրերին ողջ ժողովուրդը՝ բանվորները, գյուղացիները և զինվորները։ Աշխատավոր մասսաներին համախմբելու մեծ աշխատանք էին ծավալում բոլշևիկները։ Զինային արհեստանոցները նույնպես պատրաստվում էին Մայիսյան ապստամբությանը։

Ապստամբությունից առաջ մի երեկո արհեստանոց հավաքվեցին բոլշևիկ բանվորները, զինվորները և սպաները։

Արամը, որպես տղաներից ամենաավագը, գիտեր ապստամբության մասին։

— Շուտով մեր քաղաքում ապստամբություն է լինելու դաշնակների դեմ, և մենք, տղե՛րք, որևէ բանով պետք է օգնենք և մասնակցենք ապստամբությանը, — ասաց Արամը մի անգամ։

— Բայց ինչո՞վ կարող ենք օգնել, — հարցրին Աշոտն ու Վարդանը։

— Ապստամբության օրը մենք պետք է ազդանշան տանք, որ ժողովուրդը սկսի ապստամբությունը։ Դրա համար մենք պետք է արհեստանոցներից, պահեստներից և այլ տեղերից վառոդ հավաքենք, գնդակներ հավաքենք և այդ բոլորը զգուշությամբ տանենք գնդի շտաբը և այնտեղ պահենք հորում։ Իսկ երբ փոսը կլցնենք վառոդով և գնդակներով, վերևից կծածկենք քարերով, հետո հող կլցնենք, թողնելով մի փոքրիկ անցք, դրանից պայթյունն ավելի ուժեղ կլինի։

Հետևյալ օրը Աշոտն ու Վարդանը հերթով գնում էին հորի մոտ։ Վառոդը նրանք բերում էին ծոցերը լցրած, մոտենալով հորին, արձակում էին գոտինները և թափում այն հորի մեջ։ Այդպես 3-4 օր շարունակ տղաները վառոդ էին լցնում հորը։

Եվ ահա հասավ գրոհի օրը։ Տղաներն արդեն ամեն ինչ պատրաստել էին, մնում էր միայն կրակ տալ և պայթյունը տեղի կունենար։

Նշանակված ժամին Աշոտը վառեց լուցկին ու նրանք վերադարձան արհեստանոց։

Զանցած մի քանի րոպե, լսվեց այնպիսի մի ուժեղ պայթյուն, որ արհեստանոցի պատուհանների ապակիները դուրս թռան շրջանակներից։ Աշոտն ու Վարդանը վախեցած նայեցին միմյանց։

Հետո սկսվեց հրացանաձգությունն ու թնդաց «ուռայի» որոտը։

Այդպես սկսվեց բոլշևիկների գրոհը Սարիղամիշ քաղաքի վրա։

Հետևյալ օրը վարպետ Սուրենը գալով արհեստանոց՝ Վարդանին ու Աշոտին ամուր համբուրեց.

— Շնորհակալությո՜ւն ազդանշանի համար։

Աշոտն ու Վարդանը տարակուսած նայեցին իրար. «Որտեղի՞ց այդ մասին իմացավ վարպետ Սուրենը»։



digitised by A.R.A.R.@



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

դասավանդում է աշխարհի չեմպիոն
ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

## ԻՆՉՊԵՍ ՃԻՇՏ ՍԿՍԵԼ ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ՊԱՐՏԻԱՆ

Այժմ, երբ դուք ծանոթացել եք շախմատի կարևորագույն հիմունքների հետ, ժամանակն է անցնել սկզբնախաղային (դեբյուտային) տեսության ուսումնասիրությանը: Բոլորդ լսել կամ կարդացել եք, որ այս կամ այն պարտիայում գրոսմայստերները և վարպետները խաղացին՝ իսպանական պարտիա, թագուհու գամբիտ, Կապաբլանկայի սիստեմ, ռուսական պարտիա, հին հնդկական պաշտպանություն և այլն: Սակայն ի՞նչ է թաքնվում այդ խորհրդավոր անվանումների հետևը:

Մեզ արդեն հայտնի է, որ խաղի պրոցեսում կարևոր դեր է խաղում ֆիգուրը, երբ գտնվում է տախտակի կենտրոնում: Արքան պետք է գրավի դիրք, գրոհի, և պաշտպանության ժամանակ ֆիգուրները պետք է գործեն համաձայնեցված, և այլն: Սակայն սկզբնական դիրքում ֆիգուրները միմյանց հետ վատ են փոխգործում, որովհետև բացառությամբ զինվորների և ձիերի, նրանք քայլելու հնարավորությունից զրկված են:

Այն ուսմունքը՝ թե ինչպես ճիշտ սկսել շախմատային պարտիան կոչվում է սկզբնախաղերի տեսություն: Արդեն գոյություն ունեն մշակված շատ սխեմաներ, որոնք կիրառում են փորձառու շախմատիստները: Սկզբնախաղերը կոչվում են այս կամ այն երկրի անունով, այն երկրի, ուր մշակվել է տվյալ սկզբնախաղը կամ սիստեմը: Սկզբնախաղերի մի մասն էլ այդ սկզբնախաղերն ու սիստեմները մշակող շախմատիստի անունով են կոչվում:

Մեկընդմիշտ հիշեցեք, որ չպետք է կարծել, թե շախմատային գրքից սովորելով մի քանի սկզբնախաղային տարբերակներ, նույնիսկ ամենաժամանակակիցները ու մոդայիկները, լավ դիրք կստանաք: Ո՛չ: Նույնիսկ առավել հաճախ կիրառվող և պրակտիկայում մանրամասնորեն ստուգված սկզբնախաղերը և սիստեմները իրենց մեջ անսպառ հնարավորություններ են պարունակում: Նման «անգիր» անողի դեմ հակառակորդը կանի գրքերում չնախատեսված քայլ և այդ «գիտակը» կընկնի փակուղու մեջ:

Սակայն ո՞րն է սկզբնախաղերի տեսության ուսումնասիրության ճիշտ մոտեցումը: Այն պետք է ընթանա շախմատային պարտիայի ստրատեգիական ճիշտ սկզբունքների յուրացման ուղիով: Նշենք նրանցից առավել կարևորները:

1. Պետք է ֆիգուրները արագորեն զարգացնել, ձգտելով տեղադրել նրանց խաղատախտակի կենտրոնում, ուր, ինչպես մենք արդեն գիտենք, նրանց մարտունակությունը ավելի բարձր է, քան տախտակի եզրում, կամ նրանց խաղի մեջ մտցնել այնպես, որպեսզի կենտրոնական դաշտերը «գնդակոծեն»:

2. Պետք է ձգտել կենտրոնական դաշտերը գրավել զինվորներով: Դա անհրաժեշտ է, ֆիգուրներով կարևոր կետերի գրավումը ապահովելու տեսակետից: Իդեալական է ֆիգուրների և զինվորների կենտրոնացված զուգակցումը:

3. Զարգացման մեջ ձեռք բերելով գերակշռություն, կանգ չառնել զոհաբերությունների առջև՝ բացել ուղղաձիգները ու անկյունագծերը լավ մոբիլիզացված բանակի համար: Դա հաջողության հասնելու անհրաժեշտ պայմանն է:

4. Գրոհելով հակառակորդի արքայի վրա, չպետք է մոռանալ, որ դուք ևս ունեք արքա, որը կարող է գրոհի ենթարկվել: Ուստի անհրաժեշտ է հոգալ ձեր արքայի անվտանգության մասին: Սովորաբար դրա լավագույն ելքն է՝ փոխատեղումը (рокировка):

Սկզբում, մինչև բավականաչափ փորձ ձեռք բերելը, անշեղորեն հետևեցեք այդ կանոնին: Թող դրանք շախմատային պայքարի ծովում ձեզ համար իբրև կողմնացույց ծառայեն:

Այժմ քննարկենք պրակտիկ օրինակ: Դա իսկական վարպետի խաղացած պարտիայի մեր առաջին վերլուծությունը կլինի:

Սպիտակներ՝ Մորֆի

Սևեր՝ կոնսուլտանտներ

1. e2—e4 e7—e5
2. Ձg1—f3 d7—d6
3. d2 d4:

Այս պարտիայում սպիտակներով խաղում էր անցյալի առավել հայտնի շախմատիստներից մեկը, ամերիկացի Պոլ Մորֆին, վարպետ, որը իր պարտիաներով շախմատի ստրատեգիական հիմունքների ճիշտ ըմբռման ուղիներ ցույց տվեց: Քննարկվող պարտիայում պարզորոշ կերպով



digitised by A.R.A.R.@

կարտահայտվեն կարևորագույն էլեմենտներ, որոնք մեր օրերի քիչ թե շատ որակյալ շախմատիստի համար պարզ են, սակայն այն ժամանակ, երբ խաղացվել էր այս պարտիան, այսինքն՝ ավելի քան հարյուր տարի առաջ, գտնվում էին գոյացման ստադիայում: Հակառակորդների առաջին քայլերն են՝ պայքար կենտրոնում ամուր զինվորային դիրքի ֆիգուրների արագ զարգացման համար: Նշեմ, որ սպիտակները, իբրև առաջին քայլի իրավունք ունեցող, գտնվում են նպաստավոր դրության մեջ:

3...Փc8—g4 4.d4 : e5 Փ 4 : f3:

Ինքներդ համոզվեք, որ սևերի համար ձեռնտու չէր միանգամից վերցնել e5-ի վրա:

5.Թd1 : f3 d6 : e5 6.Փf1—c4 Ձg8—f6 7. Թf3—b3:

Սպիտակները մրցակցից ավելի լավ են զարգացած, և դա հնարավորություն տվեց նրանց անցնելու ակտիվ գործողությունների՝ հարվածի տակ են միաժամանակ b7 և f7 զինվորները: Վերջինը մոտ է արքային և նրա կորուստը կատաստրոֆիկ կլիներ: (Հապա ինչպե՞ս կզարգանար խաղը, եթե այս դրությամբ քայլը սպիտակներինը լիներ): Ուստի և սևերը «համաձայնվում» են կորցնել ավելի քիչ կարևոր b7 զինվորը:

7...Թd8—e7 8. Ձb1—c3:

Բնորոշ մոմենտ: Մորֆին ֆիգուրները զարգացնելու համար հրաժարվում է զինվորը վերցնել՝ 8. Թ : b7 թագուհիները փոխանակվելու հետևանքով՝

8...Թb5—8...c7—c6 9. Փc1—g5 b7—b5? 10. Ձc3 : b5!



Հիշու՞մ եք, վերևում ասվեց այն մասին, որ զարգացման մեջ գերակշռություն ունենալով, անհրաժեշտ է բացել գծերը...

10...c6 : b5: 11. Փc 4 : b5+ Ձb8—d7 12. 0—0—0:

Սպիտակները մեկ ֆիգուր պակաս ունեն, սակայն նրանք արդեն Փ : f6 կամ Փ : d7+ սպառնալիքներն են ստեղծել: Բնական է, որ սևերը պաշտպանության համար մոտեցնում են իրենց ֆիգուրները:

12...Նa8 — d8

13. Նd1 : d7! Նd8 : d7!

14. Նh1—d1!

Սևերը արդեն մեկ ավելորդ նավակ ունեն, բայց պայքարին այն բոլորովին չի մասնակցում, ծույլի նման «հանգստանալով» սկզբնական դիրքում՝ h8 դաշտի վրա: Իսկ այնտեղ, ուր պարտիայի բախտն է որոշվում՝ սևերի արքայի մոտ՝ ուժերի գերազանցությունը սպիտակների կողմն է: Մորֆին էֆեկտիվ ոճով է ավարտում պարտիան՝

14... Թe7—e6 15. Փb5 : d7+ Ձf6 : d 16. Թb3—b8+!! Ձd7 : b8 17. Նd1—d8×!



Այս պարտիան վերլուծեք մի քանի անգամ: Ուշադրություն դարձրեք, թե սպիտակները ինչպես թափով և նպատակասլաց կերպով էին աշխատում զարգացնել ֆիգուրները, կանգ չառնելով զոհաբերությունների առաջ, որի շնորհիվ բացվեցին դեպի սևերի արքան տանող ճանապարհները:

## ԹԱԹՈՒԼ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Անեղ ձմեռ է, ու ծառերի տակ
Նույն քամին է միշտ գնում ու գալիս.
Ասում է՝ կգան դեռ օրերը տաք,
Հույս չունեցողին նա հույս է տալիս:

Իսկ ծառը, խոնարհ, ձայն էլ չի հանում,
Տանում է բերում ճյուղերն իր վերին,
Ինձ իր հույսերը ծառը չի պատմում՝
... Նա դիմանում է ձմռան ցրտերին:



Կուզեմ նորից անծայր դաշտերը շրջել,
Բայց այս անգամ տարվել ձյունե մաքրությամբ,
Ձյունապայծառ գիշերները անրջել,
Բնությունը տեսնել իր նոր վեհությամբ:
Թեև հիմա վառ գարուն չէ ծաղկազարդ,
Ծաղկունք չկա, որ նրանցով հմայվեմ,
Բայց ձյուները փայփայում են իմ ծաղկանց,
Գուցե ես էլ նրա՞նց պիտի փայփայեմ...

digitised by A.R.A.R.@

# Ադամի ատամը

*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

Մղկտում էր Ադամը՝
Շատ էր ցավում ատամը։
Տղան ինչքա՜ն սպասեր,
Արդեն հոգուն էր հասել.
Մի օր նա սիրտ է անում
Ու բժշկի մոտ գնում։
Բժիշկն ասում է.— Ադա՛մ,
Քեզ մի խորհուրդ պիտի տամ՝
Խոր արմատն այս ատամիդ,
Թեև նստած է շատ պինդ,
Պետքական չի, ի՞նչ արած,
Բորբոքված է չափազանց։
Այդ արմատը երևի՝
Պետք է ցույց տալ արևին...—
Մտածում է Ադամը՝
Արևի հետ ատամը
Ի՞նչ կապ պիտի ունենա,
Բա պատճառը չիմանա՞։
Մայրն ասում է.— Սո՛ւս, տղաս,
Մի քիչ հետո կիմանաս...
Բժիշկն էլ չի համբերում,
Փայլուն աքցանն է բերում,
Մի քիչ խոսում դես-դենից,
Ատամն հանում է տեղից.
— Դե հիմա, տե՛ս, մե՛ր տղա,—
Ասաց բժիշկն Ադամին,—
Արևի տակ են ահա
Արմատները ատամիդ։
Մյուսնե՛րը պահիր լավ,
Որ էլ չզգաս ոչ մի ցավ։

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 07529։ Պատվեր՝ 73։ Տպաքանակ՝ 17 450։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 13/II 1965 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։

Գինը 20 կ.





digitised by A.R.A.R.@

Խոսք և երաժշտություն
ՀՐԱՉՅԱ ՕՀԱՆՅԱՆԻ



Դո, ռե, մի, ֆա, սոլ, լյա, սի, դո՝
Հնչյուններ.
Դո, սի, լյա, սոլ, ֆա, մի, ռե, դո՝
Ձայնիկներ:
Բարձրանում եք և իջնում եք
Ճաքքերով,
Միշտ լցնում եք իմ սիրտը ձեր
Երգերով:
Լա, լա, լա, լա, լա, լա,
Լա, լա, լա, լա, լա, լա:

Դո, ռե, մի, ֆա, սոլ, լյա, սի, դո՝
Հնչյուններ.
Դո, սի, լյա, սոլ, ֆա, մի, ռե, դո՝
Ձայնիկներ:
Երբ ձեզ հետ եմ, ես չեմ տխրում
Ոչ մի ժամ,
Ուրախ երգն է միշտ ինձանից
Անբաժան,
Լա, լա, լա, լա, լա, լա,
Լա, լա, լա, լա, լա, լա:

digitised by A.R.A.R.@

Գինը 20 կ.

# ԲՆՈՒԹՅԱՆ ՀՐԱՇՔՆԵՐԸ

Այստեղ քանդակագործը քամին է, ջուրն ու բնության մյուս տարերքները։

Ինդեքս 77806









1. ԼԵՌՆԱՅԻՆ ԱՐԾԻՎ — Ղայաղանի ձորում
2. ՀՆՔԱՓՈՐԻ ԴԻՄԱՆԿԱՐ — Արուրու տակ
3. Մ. ՄԱՇՏՈՑ — Մաղանի ճանապարհին
1. ԱՐՋ — Ղայաղանի ձորում

*Լուսանկարները՝*
*ՍԵՅՐԱՆ ՏԻՏԱՆՅԱՆԻ*

digitised by A.R.A.R.@